

1917 **№ 9**—*Մարտի 5* ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման, տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ** Թիֆլիս, Արտասարաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амба[illegible]ерь". Tiflis, Rédaction du journal „Hampavaber".



*ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1917 Թ.*



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

*ԽՄԲԱԳՐԱԿԱՆ.—Պետական Դումա և Հայ պատգամաւորներ. Ս. Ցարումթիլենանցի.—Նուէրներ «Համբաւաբերի» տարածման համար.—ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ.—ՆԵՐՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.—Նոր կառավարութիւն.—Հեռագիրներ.—Պետական Դումա Վ.-ի.—Վաղուայ հայ գիւղը Ա. Մաքսապետեանի.—Գեղեցիկ ձեռնարկութիւն Իշխ. Մ. Թումանեանի.—Հրահանգ Կ. Հ. Բ. Ընկ. ուսուցչական փոնդի.—Մահացուցակ, Արք. քահ. Շխեան. բժ. Մ. Մուրադեանի.—ԳԱՒԱՌ.—Սուլաա, Հին Նախիջեան, Քութայիս.—ՏԱՐԵԳԻՐ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ.—(Կ. Հ. Բ. Ընկերութիւն.—ՔՐՈՆԻԿՈՆ.—ԳԵՂԱՐՈՒԵՍՏ.—Տրտունջ (բանաստեղծ.) Ազատ-Վշտունի.—Հայ գեղարուեստագէտների ցուցահանդէսը Գ. Էդիլեանի.—ԱՅԼԵՒԱՅԼՔ.—ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ.—ՎՐԻՊԱԿ.—ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ.*

## ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱ ԵՒ ՀԱՅ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐ

Պետական Դումայի ներկայ կազմի լիազօրութեան շրջանը լրանում է այս տարի։

Եթէ պատերազմական դրութիւնը արգելք չհանդիսանայ ընտրութիւններ նշանակելու համար, այն ժամանակ Դումայի պատգամաւորների ընտրութիւնը, ըստ օրէնքի, պէտք է տեղի ունենայ առաջիկայ աշնանը։

Հարց է ծագում, թէ ինչ կարող է սպասել նոր ընտրութիւններից Կովկասի ազգաբնակութիւնը առհասարակ և հայ ժողովուրդը մասնաւորապէս։ Ցաւօք սրտի պէտք է խոստովանուել, որ մեր ներկայ իրականութեան և քաղաքական դրութեան մէջ չեն նշմարւում լաւ փափագների լուսաւոր նշաններ։

Ընտրողական օրէնքը դեռ իր ոյժն ունի։

Մինչև օրս այդ օրէնքի փոփոխութեան մասին չէ նկատւում մի որ և իցէ տրամադրութիւն ո՛չ Պետրոգրադի բարձր կառավարութեան, ո՛չ մեր երկրի բարձր իշխանութեան և ո՛չ էլ ուժեղ և առաջադէմ քաղաքական կուսակցութիւնների կողմից։ Կովկասը այս դէպքում, ինչպէս և միշտ, մնում է մի խորթ մանուկ համառուսական պետական կազմի մէջ։

Պարզ է, որ եթէ նշանակուի պատգամաւորական ընտրութիւն ներկայումս գործադրուող օրէնքի կանոննե-

րով, Կովկասը կրկին կը մնայ յուսահատ։

Կովկասի ամբողջ ազգաբնակութեանը ընտրողական օրէնքը տալիս է իրաւունք ընտրել ընդամենը տասը պատգամաւոր։ Իսկ այդ պատգամաւորներից միայն մէկը կարող է լինել հայ ազգաբնակութեան կողմից։

Եթէ ի նկատի առնենք, որ Կովկասը Ռուսաստանի խոշոր և հարուստ մասերից մէկն է համարւում, որ այս երկիրը ունի խիտ ազգաբնակութիւն, տասներկու և կէս միլիոն, որ երկրի ազգաբնակութիւնը բաւականին հասունացած է քաղաքացիական տեսակէտից և իր կրթութեամբ, ընդունակութիւններով և կուլտուրայով ստոր չէ Ռուսաստանի ներքին նահանգների ժողովուրդից, որ Ռուսաստանում ամեն մի երկու կամ երեք հարիւր հազար բնակչութիւն ունեցող շրջանին իրաւունք է տրուած մէկ պատգամաւոր ընտրելու, այն ժամանակ ակներև կը լինի անհաւասար վերաբերմունքը Կովկասի ազգաբնակութեան։

Բացի յիշեալ պատճառներից, որով չպէտք է կրճատուէին Կովկասի պատգամաւորների թիւը, կայ և մի հանգամանք, որը պէտք է դրդէր դեռ աւելի լայնացնելու Կովկասի ազգաբնակութեան ընտրողական իրաւունքը։ Այդ հանգամանքը Կովկասի ազգաբնակութեան կազմի առանձնայատկութիւնն է։

Կովկասում ապրում են, բացի ռուսներից, երեք խոշոր ազգեր, այն է՝ թուրքեր, հայեր և վրացիներ. դրանցից ամեն մէկը ունի իրեն յատուկ բազմաթիւ և բազմատեսակ կարիքներ և խնդիրներ։

Այս պատճառաւ անհրաժեշտ է ոչ թէ միայն այն, որ ամեն մի ազգից լինեն պատգամաւորներ, այլ և որ պատգամաւորների թիւը լինի ամեն մի ազգի թուի համեմատ։

Ուստի եթէ ամեն մի ազգ չունենայ հարկաւոր չափով պատգամաւորներ, չի կարելի ասել, որ նա ունի բաւարար ներկայացուցչութիւն Դումայում։ Եղած սակաւաթիւ պատգամաւորները, որքան էլ բարեխիղճ, հմուտ, ընդունակ և անձնուէր լինեն, այնուամենայնիւ նրանք անկարող են կատարել իրենց վրայ ծանրացած գործերը և աշխատանքը։ Պատգամաւորական բարձր կոչումը կը մնայ կիսակատար, իսկ ընտրող ժողովուրդը՝ անբաւական։

Ընտրողական օրէնքի թերութիւնը աւելի ուժեղ կերպով արտայայտւում է հայերի վերաբերմամբ։

Ամբողջ հայ ազգաբնակութեան կողմից, որ այժմ թւով մէկ միլիոն ութ հարիւր հազարից աւելի է համարւում, կարող է ընտրուել միմիայն մէկ պատգամաւոր։

Ահա՛ թէ ինչու հայ մամուլը վերջերս, արձագանգ տալով «Բագու» ռուս թերթի այս առթիւ յարուցած ընդհանուր խնդրին, յայտնում է իր արդարացի բողոքը և ցանկութիւնը, որ օր առաջ հոգացուի ուղղելու օրէնքի բացասական կողմը, որպէս զի Կովկասում էլ ամեն մի ազգի իրաւունք տրուի ընտրել պատգամաւորներ Դումայի համար Ռուսաստանում սահմանուած նորմայով։

Եւ մի՞թէ տարօրինակ չէ, մի՞թէ կարելի է հաշտուել այն մտքի հետ, որ միևնոյն պետութեան մէջ ապրող բնիկ ժողովուրդները հաւասար իրաւունքներ չվայելեն միայն այն պատճառաւ, որ մի մասը ապրում է պետական մի որևիցէ ծայրում, կամ պատկանում է այս կամ այն ազգութեան։

Մի պետութեան սահմաններում ապրողների մէջ չպէտք է լինի բաժանումն «հելլենների և իսրայէլացոց», «հրէայի և հեթանոսի»։

Այդ պահանջում է արդարութիւնը. այդ թելադրում են պետական քաղաքականութեան և նրա ներքին կեանքի խաղաղութեան շահերը։

Այս մի պարզ և անվիճելի ճշմարտութիւն է։

Անցնելով այժմ այն հարցին, թէ ո՛րքան պատգամաւորներ արդարացի կը լինէր պահանջել հայ ազգաբնակութեան համար, պէտք է ի նկատի առնել, որ հայերը ապրում են ոչ թէ մի շրջանում, այլ գլխաւորապէս հինգ նահանգներում, այն է՝ Երևանի, Գանձակի, Բագուի, Թիֆլիսի, Կարսի և Բաթումի նահանգներում։ Եթէ պատգամաւորի նշանաբանը և պարտականութիւնն է, բացի օգտակար մասնակցութիւնից ընդհանուր խնդիրներում, լինել և իր ընտրող ժողովուրդի և շրջանի իսկական ներկայացուցիչը, նրա ցաւերի, կարիքների ճիշտ արտայայտողը, այն ժամանակ հայերի համար կանոնաւոր ներկայացուցչութիւնը պէտք է կազմուի, ըստ հայ ժողովուրդի թուի, հետևեալ կերպով. Երևանի նահանգից երկու պատգամաւոր, Գանձակի և Բագուի նահանգներից միասին երկու, Թիֆլիսի նահանգից մէկ և Կարսի և Բաթումի նահանգներից միասին մէկ, ընդամենը վեց պատգամաւոր։ Այսպիսի կազմով հայ պատգամաւորները կարող են գործել արդիւնաւոր կերպով Դումայում և արդարացնել իրենց ընտրող ժողովուրդի յոյսերը։

Այժմեան իրաւազուրկ դրութիւնը այլ ևս անտանելի է։ Պէտք է վերջ տալ այս անբնական (անորմալ) կացութեանը։

Անհրաժեշտ է, որ Պետական Խորհրդում ևս Կովկասի ազգութիւններն ունենան մէկ-մէկ ներկայացուցիչ։

Հայ ժողովուրդի ներկայացուցիչները և Պետական Դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանը, ինչպէս և միւս ազգերի ներկայացուցիչները, պէտք է դիմումն անեն ուր անկ է, որպէսզի վաղօրօք մշակուի և հաստատուի մի նոր օրինագիծ, և Կովկասի ազգութիւնները առաջիկայ ընտրութիւններին չմնան նոյն վիրաւորական և իրաւազուրկ դրութեան։ Ամեն մի ազգի համար միանգամայն բնական և իրաւացի պահանջ է՝ ունենալ բարձր օրէնսդրական հիմնարկութիւններում իսկական ներկայացուցչութիւն և ո՛չ թէ ֆիկցիա։

Եւ իմաստուն, հեռատես քաղաքականութիւնը պէտք է ընդառաջ գայ այդ արդարացի պահանջին։

Ս. Յարութիւնեանց

---

## ՆՈՒԷՐՆԵՐ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ» ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

1) Գ. Ա. Փարեմուզեանի միջոցաւ իւր որդու՝ Աշոտի անուանակոչութեան օրը ժողոված յօգուտ «Համբաւաբերի» տարածման 48 ռ., նուիրատուներն են՝ Կ. Արզումանեան 5 ռ., Ե. Արզումանեան 1 ռ., Ս. Թամազեան 5 ռ., Մ. Թամազեան 1 ռ., Մ. Չրխլեան 5 ռ., Տ. Չրխլեան 1 ռ., Դ. Արովեան 3 ռ., Ար. Փարեմուզեան 3 ռ., Արիստ. Փարեմուզեան 5 ռ., Արտ. Փարեմուզեան 3 ռ., Հ. Փարեմուզեան 1 ռ. 50 կ., Ջ. Փարեմուզեան 1 ռ., Փ. Փարեմուզեան 1 ռ. 50 կ., Կ. Շիրինեան 1 ռ. 50 կ., տիկ. Ղուրբանեան 3 ռ., Շ. Ղազարոսեան 1 ռ., Ա. Ղազարոսեան 1 ռ., Մ. Ղազարոսեան 1 ռ., Ս. Միրզոյեան 1 ռ. և Փ. Սեփնեան 1 ռ.։

2) Արշակ Կիրակոսեան Մովսէսեանից 36 ռ., որից 5 օրինակ պէտք է ուղարկուի իւր ցոյց տուած հասցէներով, իսկ 4 օրինակը խմբագրութեան տնօրէնութեամբ։

---

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

*Վերջին շաբաթուայ ընթացքում թէ ռազմական և թէ քաղաքական տեսակէտից կատարուած նշանաւոր փոփոխութիւնը՝ Բաղդադի և Բիրման շահի գրաւումն էր անգլիացիների և ռուսների կողմից։ Փետր. 23-ին Դիալա գետից անցնելով անգլիացիներն ամրացան Տիգրիսի աջ ափին և ապա վանելով թշնամու զօրագունդը գրաւեցին երկաթուղային կայարանը, Բաղդադի մեծ ճանապարհի վերջաւորութիւնը, որ այնքան կարևոր դեր խաղաց վերջին տարիների համաշխարհային քաղաքականութեան մէջ։*

*Փետր. 29-ին անգլիացիները ուժեղ գրոհով մտան Բաղդադ և վերջնականապէս գրաւեցին։ Այժմ նրանք քայլ առ քայլ առաջանում են Միջագետքում՝ գրաւելով նորանոր դիրքեր։*

*Բաղդադի գրաւումը մեծ հարուածէ թէ ռազմական և թէ քաղաքական տեսակէտից ոչ միայն փտած Տաճկաստանին, այլ նրա հզօր դաշնակից Գերմանիային, որ հսկայական ծրագիր մշակում և երազներ էր տեսնում Միջագետքի այդ կենտրոնական քաղաքի շուրջը։*

---

# Ներքին տեսութիւն

## ՆՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ

Կատարուեց այն՝ ինչ պէտք է կատարուէր պատմական և երկաթէ անհրաժեշտութեամբ։

Ընկաւ հին խարխլած կառավարութիւնը և նրա տեղ հաստատուեց նոր ժամանակաւոր կառավարութիւն ժողովրդական ներկայացուցիչներից՝ Պ. Դումայի նախագահ Ռոձեանկոյի գլխաւորութեամբ և յառաջադիմականների (պրոգրեսիստների), կադետների, հոկտեմբերեանների և ձախակողմեանների—Չխէիձէի ու Կերենսկու մասնակցութեամբ։

Պետ. Դումայի «Գործադիր Կոմիտէտ» է անուանում իրեն այս ժամանակաւոր կառավարութիւնը։ Ռուսաց սահմանադրութեան հակառակ օրէնսդրական հաստատութիւնը գործադիր իշխանութիւն է վերցնում իր վրայ։

Բացառիկ պայմանները բացառիկ միջոցներ են թելադրում։ Խորտակւում են հին «կառավարութեան», պատմական «հին կարգի» հիմքերը և «նոր կարգ» է հաստատւում Ռուսաստանում։

Հին անպատասխանատու իշխանութեան փոխարէն, որ երկիրն ու ժողովուրդը դէպի կործանման անդունդ էր տանում՝ մի նոր իշխանութիւն է հաստատւում, որին հաւատում է ժողովուրդը։

Կառավարութեան ղեկը դաւաճան նախարարներից անցնում է ժողովրդական և հայրենասէր մարդկանց ձեռքը։

Ռուսաստանի համար նոր կեանք է սկսւում։ Նրա հասարակական կեանքի «ուղիղ կէս գիշերին», երբ անյոյս ու խեղդող խաւարն էր պատել նրան՝ մի նոր վառ արշալոյս բացուեց նրա համար։ Գարուն է սկսւում և ռուս քաղաքական կեանքի համար։

Այսօր մենք միայն շտապում ենք արձանագրել այս մեծ պատմական եղելութիւնը, որ իրերի երկաթէ տրամաբանութեամբ կատարուեց Ռուսաստանում, և ողջունել Ռուսաստանի բազմաչարչար ժողովուրդների նոր կեանքի նո՛ր օրը։

---

# ՀԵՌԱԳԻՐՆԵՐ

Պետրոգրադի Հեռագրական Գործակալութեան միջոցով, բոլորն էլ ստացւում են Պետական Դումայի Գործադիր Յանձնաժողովի կարգադրութեամբ։

*Պետրոգրադ, 1 մարտի.—Փետրուարի 27-ին, ուղիղ կէս գիշերին, վերջնականապէս կազմակերպուեց Պետական Դումայի Գործադիր յանձնաժողով (կոմիտէ) հետևեալ կազմով. Ռոձեանկօ, Կերենսկի, Չխէիձէ, Շուլգին, Միլիւկով, Կարաուլով, Կոնովալով, Դմիտրիւկով, Ռժևսկի, Շիդլովսկի, Նեկրասով, Լւով։*

### Ռոձեանկոյի կոչը զօրքին եւ նաւատորմիղին

*Պետական Դումայի Ժամանակաւոր Յանձնաժողովը, որ իւր ձեռքն է առել կեանքի նոր նոր պայմաններ ստեղծելու և մայրաքաղաքի կառավարութիւնը, հրաւիրում է գործող զօրքը և նաւատորմը պահպանելու կատարեալ անդորրութիւն և վստահութիւն է տածում, որ ընդհանուր գործը արտաքին թշնամու դէմ մի վայրկեան անգամ դադարելու և կամ թուլանալու չէ։ Այնպէս անվկանդ և արութեամբ, ինչպէս ցարդ, զօրքն ու նաւատորմիղը պարտաւոր է շարունակել իրենց հայրենիքի պաշտպանութեան գործը։ Ժամանակաւոր Յանձնաժողովը մայրաքաղաքի զօրամասերի գործակցութեամբ և բնակչութեան համակրութեամբ մօտիկ ժամանակում կը մտցնի անդորրութիւն թիկունքում և կը վերականգնի կառավարութեան կարգադրութեանց և գործողութեանց կանոնաւորութիւնը։*

*Թող իւր կողմից ամեն մի սպայ, զինուոր, նաւազ (մատրոս) հանդարտ կատարի իւր պարտքը և յիշի, որ կարգապահութիւնը և կարգը լաւագոյն գրաւականն են, որոնցով իսկապէս և արագ կը վերանայ հին կառավարութեան առաջացրած քայքայումը և կը ստեղծուի նոր կառավարչական իշխանութիւն։*

*Պետրոգրադ, 1 մարտի.—Աւագների խորհուրդը փետրուարի 28-ին ժողովուելով արտակարգ նիստի և ծանօթանալով Դումայի արձակման հրովարտակին, որոշեց. Պետական Դուման չէ ցրւում և բոլոր երեսփոխանները մնում են իրանց տեղում։*

*Պետրոգրադ, 1 մարտի.—Ռոձեանկոյի հեռագիրը Ցարին. «Դրութիւնը լուրջ է. կառավարութիւնն անզօր... ընդհանուր դժգոհութիւնը սաստկանում է. փողոցներում հրացանաձգութիւն է. զօրամասերն իրար վրայ կրակ են արձակում։ Անհրաժեշտ է անմիջապէս յանձնել երկրի վստահութիւնը վայելող անձի նոր կառավարութիւն կազմելու։*

*Ուշացնել չէ կարելի, ամեն յապաղում մահահանգոյն է։ Աղօ-*

թում եմ Աստծուն, որ պատասխանատւութիւնը չընկնի Թագակրի վրայ։

Սոյն հեռագիրն ուղարկուած է ճակատների հրամանատարներին, խնդրելով պաշտպանել Ցարի առաջ Պետական Դումայի նախագահի այս դիմումը։

Պետրոգրադ, 2 մարտի. —Պետական Խորհրդի ընտրեալ անդամները փետրուարի 28-ին կայսեր ուղարկեցին հեռագիր հետեւեալ բովանդակութեամբ.—Մենք ստորագրեալներս դիմում ենք Ձեզ գիտակցելով ահաւոր վտանգը, որ սպառնում է հայրենիքին, որպէսզի կատարենք մեր խղճի պարտքն առ Ձեզ և առ Ռուսաստանը։ Փոխադրութեան և անհրաժեշտ միջոցների կատարեալ բացակայութեան պատճառաւ կանգ են առել գործարանները։ Ստիպեալ անգործութիւնը, պարենաւորման ծայրայեղութեան ճգնաժամը ժողովրդական զանգուածներին հասցրին կատարեալ յուսահատութեան։ Այս զգացումը սաստկացաւ այն ատելութեամբ դէպի կառավարութիւնը և այն ծանր կասկածով իշխանութեան դէմ, որ ընկել էր ժողովրդի հոգու մէջ։ Այս բոլորն արտայայտուեց ժողովրդական տարերական խռովութեամբ, որին միանում են և զօրքերը։ Կառավարութիւնը, որ երբէք չէր վայելում Ռուսաստանում վստահութիւն, վերջնականապէս վարկաբեկուած է և իսպառ անզօր է ահաւոր դրութիւնը բարե՛արգելու։ Արքայ. Այժմեան կառավարութեան իշխանութեան գլխին մնալը նշանակում է կատարեալ քայքայումը օրինական կարգի, որի անխուսափելի հետեւանքը կը լինի պատերազմի անյաջողութեան, արքայական հարստութեան—դինաստիայի անկման և մեծագոյն չարիքը Ռուսաստանի համար։ Մենք համարում ենք վերջին և միակ միջոցը Ձեր Կայսերական Մեծութեան ներքին քաղաքականութեան ուղղութեան փոփոխումը. ըստ բազմիցս արտայայտուած ցանկութեանց ժողովրդական ներկայացուցչութեան, դասակարգի և հասարակական կազմակերպութեանց, անմիջապէս հրաւիրելով օրէնսդրական պալատները, հեռացնելով նախարարների այժմեան խորհուրդը և յանձնելով ժողովրդի վստահութեանը արժանի անձի, որ Ձեզ, Տէր Արքայ, ներկայացնի ի հաստատութիւն ցուցակը նոր դահլիճի (կաբինէտի), որ ունակ լինի կառավարելու երկիրը կատարեալ համաձայնութեամբ ժողովրդական երեսփոխանական ժողովի։ Ամեն մի ժամը թանկ է, այսուհետև յետաձգումը և տատանումը սպառնում են անթիւ ու անհամար դժբախտութիւններ։

Կովկասեան բանակի պարենաւորման գլխաւոր պետի վարչութիւնից

Նկատի ունենալով շրջող զանազան լուրերը, հաղորդւում է, որ Պետրոգրադում տեղի են ունեցել անցքեր, որոնց հետեւանքով կատարուել է կառավարական բարձր անձերի փոփոխութիւն. ընդ սմին մայրաքաղաքում ներկայումս հանգստութիւն է տիրում,

Կովկասեան բանակի զօրքերը յաղթականօրէն առաջ են անցնում մեր քաջարի դաշնակից-անգլիացիների հետ։

Կովկասի բնակչութեան կողմից կատարեալ հանգստութիւն պահպանելը ծայր աստիճան անհրաժեշտ է՝ ապահովելու համար բանակի յաղթութիւնը և բնակչութեան համար անընդհատ ուտեստի պաշարներ բերելն ու մատակարարելը։

## ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱ

17 փետր. Նիստում երկրագործութեան նախարարը իր ճառի մէջ ասում է, որ «ամենքը սկսեցին յարձակուել սիստեմի—պետական ամբողջ կարգի վրայ՝ փոխանակ միանալու այն միակ ձայնին, որ այժմ պէտք է ասէ գիւղացիներին—բերէք ամենը, մինչև վերջինը. այս է պահանջում պատերազմը, բանակը»..։ Այսպիսով երկրագործութեան նախարարը փրկութիւնը գիւղացիների և նրանց «բարի կամքի» կոչ անելու մէջ է գտնում։

Չիբինսկին պատասխանում է՝ թէ «Շուկայից հացի անհետացման մեղքն ընկնում է ոչ թէ հաստատ գների վրայ, այլ անսիստեմութեան վրայ, որ խանգարում է հաստատ գները... Նախարարը պնդում է, որ գիւղացիներին անդադար թելադրեն, որ հացը շուկայ հանեն։ Բայց ինչու թելադրել այդ միայն գիւղացիներին։ Մի՞թէ միայն գիւղացիներն են պարտական կատարել իրենց հայրենասիրական պարտքը։ Իսկ դուք կատարո՞ւմ էք ձեր հայրենասիրական պարտքը երկու տարուց ի վեր։ Հասարակութիւնը կռւում է կառավարութեան դէմ և ասում է նրան. «Հեռացէք այդ աթոռներից».—Միայն գոյութիւն ունեցող կառավարական սիստեմի փոփոխութիւնն է, որ կարող է տալ այն, ինչ հարկաւոր է՝ թէ թիկունքի կարգաւորման և թէ թշնամու յաղթանակի»։

23-ին և 24-ին փետր. շարունակւում է պարենաւորման հարցի քննութիւնը... Լսւում են սովորական խօսքեր։ Ռոդզիչեւի ճառի սղագրութիւնը բռնւում է Դումայի նախագահի գրաքննութեան կողմից։

Խօսւում է Պետրոգրադի և այլ քաղաքների պարենաւորման հարցի մասին և ընդունւում համապատասխան հարցապնդումներ.

Պետ. Դումայի Նախագահը մի արտակարգ յայտարարութիւն է անում՝ թէ կանոնաւոր պարենաւորումը քայքայուելու պատճառով Պետրոգրադում և ուրիշ կենտրոններում ու քաղաքներում առաջացած յուզումները ներկայումս ստացան, ինչպէս գիտէք, այնպիսի չափեր, որոնք անտարակոյս սպառնում են վերածուել չափազանց անցանկալի և ներկայ ծանր պատերազմական պայմաններում անթոյլատրելի հետեւանքների։ Սուր բնոյթ ստացած դրութիւնն անյետաձգելի և շուտափոյթ միջոցներ է պահանջում ազգաբնակութեանը հանգստացնելու համար։ Այդ նկատումներով, իմ պնդումի վրայ, որի մասին ես լիազօրուած եմ յայտարարելու Պետական Դումային պարոն մինիստր-նախագահի կողմից. այսօր արտակարգ խորհրդակցութիւն կը կայանայ նրա նախագահութեամբ, 4 նախարարների կամքով... Պետ. Խորհրդի և Պ. Դումայի նախագահների և նախագահի օգնականների, Պետրոգրադի քաղաքագլխի և նահանգային զեմստուային վարչութեան նախագահի հետ միասին...

Փետրուարի 25-ի նիստում Նեկրասովը յայտարարում է երէկուայ արտակարգ խորհրդակցութեան մասնակցած Դումայի ներկայացուցիչների կողմից, որ Դումայի ներկայացուցիչները չկարողացան սահմանափակուել Պետրոգրադի պարենաւորման մասնաւոր հարցով։ Նրանք բազմակողմանի, որոշ և միաժամանակ զգուշաւորութեամբ պարզեցին այն բոլոր դժուարութիւնները, որոնք վերաբերում են պետական կեանքին և ոգեւորում Պետական Դուման...

Շինգարեւն էլ յիշեցնում է ժողովրդական հին առածը—«մինչև որ որոտումը չլսուի»...

Այդ օրը Դուման բաց քուէարկութեամբ ցանկալի է համարում պարենաւորման գործը տեղական ինքնավարութեան յանձնել։

Չխէիձէն և Կերենսկին մատնանշում են այն հանգամանքը, որ որոշ վայրեր զուրկ են այդ ինքնավարութիւնից, ուստի և կարող են աւելի տուժել, և ապա առաջարկում են քննել երկրագործութեան նախարարի բացատրութիւնը։

Նախագահը նիստը այդ օրը ընդհատուած է յայտարարում։

Յաջորդ նիստը փետրուարի 28-ին։

Իսկ Պետր. Հեռ. Գործակալութիւնը փետր. 27-ին հեռագրում է. «Կառավարիչ ծերակոյտին (սենատին) տրուած անուանական Բարձրագոյն Հրովարտակներով հրամայւում է Պետ. Դումայի և Պետ. Խորհրդի զբաղումները դադարեցնել փետր. 26-ին

գաղթականութեան ցուցակագրութիւն ամբողջ ճակատի վրայ, որից պարզուել է, որ թիւը հասնում է մօտ 300,000-ի։

*Պարսկաստանում*.—Կ. Հ. Բ. Ընկերութիւնը գեներալ Թամամշեանի յանձնարարութեամբ պետութիւնից փոխարինաբար ստացել է 1,400,000 ռ., որով բացել է 32 պահեստ. այլ և ունի իր սեփական տրանսպորտը՝ բաղկացած ֆուրգոններից, երկանիւ և այլ սայլերից և գրաստների պարենաւորման բաժանմունքը հայթայթել է գաղթականութեանը 303 վագոն ալիւր, 20 վագոն շաքար, 15 վագոն բրինձ և այլ մթերքներ։

---

## ԽՈՇՈՐ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՆՈՒԷՐ 12,000 ՌՈՒԲԼԻ ՏԱՐԵԿԱՆ

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեանը ստացել է Պետրօգրադից պ. Արշակ Պետրոսեան Ունանեանից մի նամակ, որի մէջ ասուած է, ի միջի այլոց, հետեւալը.

«Ես ուրախութեամբ ստացայ Ձեր նամակը և հաճութեամբ ընդունում եմ Ձեր առաջարկութիւնը ցոյց տալու իմ համեստ աջակցութիւնը Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան բարի ձեռնարկներին։ Նորերս ես ներկայացրի տիկին Եղիսաբեթ Գրիգորեան Սարիբէգեանին մի փոքր գումար 2,400 ռ., այդ, նրա ասելով, բաւական է Թելաւի շրջանի մէկ դպրոցի տարեկան ծախսերի համար։

Այժմ խոստանում եմ Ձեզ, բացի այն գումարից, նոր դըպրոցներ բանալու համար ես 9,600 ռ., այնպէս որ ես իւրաքանչիւր տարի կը տամ 12,000 ռ., և կը ցանկանայի, եթէ հնարաւոր լինի, այդ դպրոցները անուանուէին այսպէս. «Պետրօգրադի Հայկական Հոգաբարձական Ընկերութիւն» անունը։

Օգտուելով դէպքից, խնդրեմ գրէք ինձ անդամ Ձեր Ընկերութեան և ուղարկեցէք Ընկերութեան կանոնադրութիւնը և վերջին տեղեկագիրը...»։

Խորհուրդը այս նուիրատւութեան առթիւ հեռագրով յայտնեց մեծայարգ նուիրատուին խորին շնորհակալութիւն, իսկ պոստով ուղարկեց մշտական անդամութեան մրցագիր (դիպլոմ) և տեղեկագիրը։

Խորհուրդը նուիրած գումարի գործադրութեան մասին մշակել է մի առանձին ծրագիր և նուիրատուին պատուելու առթիւ զեկուցումն կը ներկայացնի ընդհանուր ժողովին։

Ներկայումս մեր ամենացաւոտ խնդիրներից մէկը հայ դըպրոցն է. նիւթական միջոցների պակասութեան պատճառաւ մեր դպրոցները փակման վտանգի մէջ են։

Մինչև օրս միայն պ. Տիգրան Աֆրիկեանն էր համարւում դպրոցական խոշոր նուիրատու, այժմ նրան միացաւ և պ. Ա. Ունանեանը։

Ցանկանանք, որ սրանց բարի օրինակին հետեւեն մեր միւս հայ հարուստները, և այն ժամանակ մենք կը պայծառացնենք մեր ազգային նուիրական հաստատութիւնը—մանուկ սերունդի լուսաւորութեան տաճարը։

— —

## ՀՐԱՀԱՆԳ

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՖՈՆԴԻ

1.

Կ. Հ. Բ. Ընկերութեան կից, նրա 30 ամեայ յոբելեանի առթիւ հաստատւում է ուսուցչական ֆոնդ։

2.

Ուսուցչական ֆոնդի նպատակն է՝ նիւթականապէս օգնել հայոց դպրոցներում ծառայող ուսուցիչ-ուսուցչուհիներին կամ նրանց այրիացած և որբացած կարիքաւոր ընտանիքներին։

3.

Օգնութիւնը տրւում է իբր միանուագ նպաստ կամ իբր կենսաթոշակ։

4.

1) Միանուագ նպաստ տրւում է հիւանդութեան և այլ անբարեյաջող դէպքերում, երբ ուսուցիչ կամ ուսուցչուհին ընկնում են նիւթական նեղ դրութեան մէջ։

2) Ուսուցիչ-ուսուցչուհու մահուան դէպքում, նրանց ընտանիքը կարող է ստանալ միանուագ նպաստ։

5.

Կենսաթոշակ տրւում է երբ ուսուցիչ կամ ուսուցչուհին ծերութեան կամ անբուժելի հիւանդութեան պատճառով ընդմիշտ զրկւում են աշխատելու կարողութիւնից և նրանց ընտանիքը մնում է նիւթական նեղ կացութեան մէջ։ Կենսաթոշակ ստանալու համար պահանջւում է, որ ստացողը ծառայած լինի հայոց դպրոցներում ոչ պակաս քան 15 տարի։

1) Ուսուցչական ֆոնդից կարող են նպաստ ստանալ միայն այն ուսուցիչները, որոնք ֆոնդը կազմելու օրը պաշտօնավարելիս են եղել մեր հայոց ազգային եկեղեցական-ծխական դպրոցներում կամ այդ օրուանից յետոյ են սկսել ուսուցչական պաշտօնը։

*Ծանօթութիւն*.—Եթէ կենսաթոշակ ստացողի նիւթական դրութիւնը բարուոքւում է, այդ դէպքում թոշակի վճարումն ընդհատւում է կամ կրճատւում։

6.

Ուսուցչական ֆոնդի միջոցները կազմում են.

ա) Ընկերութեան 30 ամեայ յոբելեանի առթիւ հանգանակած դպրոցական ուսուցչական ֆոնդի գումարի տոկոսների կէսը.

բ) Ընկերութեան կենտրոնի և ճիւղերի նախահաշուով նշանակած գումարները, որի նշանակելը պարտաւորիչ չէ.

գ) Յատուկ կամ պայմանաւորեալ նուէրները.

դ) Կենտրոնի և ճիւղերի յատուկ այս նպատակի համար կազմակերպած ներկայացումներից, երեկոյթներից, դասախօսութիւններից և զբօսանքից գոյացած գումարները՝ ըստ ցանկութեան ճիւղի։

7.

Ուսուցչական ֆոնդը Խորհրդի անմիջական հսկողութեան տակ կառավարւում է առանձին յանձնաժողովով, որի կազմը հետեւեալն է.

ա) Խորհրդի կազմից երեք անդամ, Խորհրդի ընտրութեամբ.

բ) Կ. Հ. Ուսուցչական Միութեան վարչութեան երկու ներկայացուցիչ.

գ) Կ. Հ. Բ. Ընկերութեան ընդհանուր ժողովից ընտրուած երկու անդամ։

8.

Յանձնաժողովը իւր որոշումների մասին կազմում է արձանագրութիւններ և ներկայացնում է Խորհրդին ի հաստատութիւն։

9.

Խորհուրդը եթէ նկատում է, որ յանձնաժողովի որոշումը թերի և անկանոն է կանոնադրութեան տեսակէտից, վերադարձնում է արձանագրութիւնը յանձնաժողովին, պատճառաբանելով իւր անհամաձայնութիւնը և առաջարկելով խնդիրը վերաքննել։ Եթէ յանձնաժողովը վերաքննելուց յետոյ դարձեալ մնայ իւր նախկին որոշման՝ Խորհուրդը խնդիրը վճռում է վերջնականօրէն. իսկ ֆոնդի յանձնաժողովը Խորհրդի վճռին չը համաձայնելու դէպքում կարող է բողոքել ընդհանուր ժողովին։

10.

Յանձնաժողովի գրութիւնները, ինչպէս Ընկերութեան միւս գրութիւնները, կատարւում են Խորհրդի անունից։

*Ծանօթութիւն.*—Համաձայն Ընկերութեան կանոնադրութեան, յանձնաժողովի գործադիր անդամները պէտք է լինին Ընկերութեան անդամ։

---

# ՄԱՀԱՑՈՒՑԱԿ

## ԱԲՐԱՀԱՄ ՔԱՀ. ՇԽԵԱՆ

Կարճատև պատահական ծանր հիւանդութիւնից, միջին հասակում վախճանուեց Կովկասի հանքային ջրերում, Պեատիգորսկում Տէր Աբրահամ քահանայ Շխեանը։ Իրողութիւն է, որ մեր հայ քահանաները չեն կանգնած իրենց կոչման բարձրութեան վրայ (խօսքս բացառութիւններին չի վերաբերում). հայ քահանան, երբեմն հասարակական գործիչ, այժմ դառել է միայն ծիսակատար և միայն իւր ապրուստի մասին հոգացող։ Չկան այլևս մեր մէջ գաղափարական քահանաներ։ Ծանր կորուստ պիտի համարել, երբ մեր միջից վերանում է մի քահանայ, որ իր հասարակական գործունէութեամբ սակաւաթիւ բացառութիւններից մինն է։

Հանգուցեալ Տէր Աբրահամ Շխեանի մահը մի ծանր և հասարակական կորուստ պէտք է համարել. նա 30 տարուց աւելի Պեատիգորսկում քահանայութիւն է արել, եկել է այդ քաղաքը դեռ այն ժամանակ, երբ ոչինչ չի եղել։ Երիտասարդ հասակում Ներսէսեանի դպրոցաւարտ, վառվռուն յոյսերով և եռանդով. չը նայած որ ծանրաբեռնուած էր մեծ ընտանիքով, նա կատարել է իր պաշտօնը օրինակելի կերպով և կարելի է ասել, որ այդ երեք տասնեակ տարիների ընթացքում Պեատիգորսկում չի եղել ոչ մի աչքի ընկնող հասարակական գործ կամ երևոյթ, որին հանգուցեալը մասնակցած չը լինէր և միշտ իրեն յատուկ աշխուժով և ոչ լոկ խօսքով, այլ և գործով։ Աւելորդ է այստեղ մի առ մի թուել հանգուցեալի կատարած գործերը. ես կը յիշեմ միայն մի քանիսը. 1) Հանգուցեալի ջանքերը եկեղեցու և ուսումնարանի շինութեան գործում 2), նրա ուսուցչական գործունէութիւնը, մանաւանդ պետական ուսումնարաններում։

Հայ մանուկները և պատանիները այդ ուսումնարաններում մնում էին անխնամ, մայրենի լեզուից և կրօնի դասանդութիւնից զուրկ. պետական ուսումնարանները փող չէին գտնում այդ աւելորդ առարկաների համար։ Տէր Աբրահամը բողոքելով այդ դրութեան դէմ, երկար տարիներ ամենաբարեխիղճ կերպով տուել է պետական ուսումնարաններում դասերը ձրի (թող լսեն մեր այն քահանաները, որոնք նոյն իսկ չաղ ռոճիկով այդ գործում ցոյց են տալիս իրենց անբարեխղճութիւնը և անպատրաստականութիւնը, մանաւանդ մեր Թիֆլիսի պետական ուսումնարաններում)։

3) Կ. Հ. Բ. Ընկերութեան Պեատիգորսկի ճիւղի գլխաւոր հիմնադիրներից մէկն էր, որի գործունեայ նախագահն էր մինչև վերջը։

4) Վերջապէս հանգուցեալի փառաւոր պսակն էր—Կ. Հ. Բ. Ընկերութեան հայկական ապաքինարանը՝ սանատորիումը մեր ազգի մտաւորականների և գործիչների համար։ Ապաքինարանը հանգուցեալի առանձին խնկմունքի առարկան էր. անդադար աշխատում էր ազատել այդ ազգօգուտ հիմնարկութիւնը պարտքից. և ամեն մէկը՝ թէ տեղացի և թէ եկուոր բուժման եղանակի վերջին կը տեսնէր սիրելի տէր-հօրը ժապաւինեալ մատեանով, որ՝ ժպիտը երեսին հրաւիրում էր ստորագրել ապաքինարանի՝ սանատորիումի պարտքը հանգցնելու համար։ Վերջին իմ տեսակցութիւնս հանգուցեալի հետ այդ մատեանով էր. նրա վերջին խօսքն էր՝ «բժիշկ, ես չեմ հանգստանայ՝ մինչև այս ապաքինարանի պարտքը չը հանգցնեմ, մինչև չը տեսնեմ, որ այդ հիմնարկութիւնը լրիւ ծառայում է իւր նպատակին»։

Բայց, աւա՜ղ, ով հազուագիւտ մեզ բոլորիս սիրելի աշխատաւոր հոգևոր հայր, չարժանացար քո այդ սրտի ըղձի կատարումը տեսնելու։ Վաղաժամ մահը խլեց քեզ քո ընտանիքից, որի վրայ այնքան մտաւորականին վայել աշխատանք ես թափել, խլեց քեզ Պեատիգորսկի հասարակութիւնից, որի անխոնջ մշակն էիր դու։ Դու քո ամբողջ կեանքովդ ցոյց տուիր, որ ծառայել եկեղեցուն և ժողովրդին լոկ խօսք չէր, այլ կեանքիդ նշանաբանը. հանգիստ քեզ, աշխատասէր, մեր կեանքի համեստ համակրելի մշակ։

*Բժշկ. Մ. Մուրադեան*

---

# ԳԱՒԱՌ

*Սուլտա.*—Յունուարի 11-ին գիւղիս ծխական դպրոցի սաները ժամանակաւոր հին շէնքից տեղափոխուեցին նորակառոյց դպրոցի շէնքը և այնտեղ սկսուեցին դպրոցական պարապմունքները։ Նոր դպրոցի վրայ մինչև այսօր ծախսուած է մօտ 10—12 հազար ռ., 4 դասարան պատրաստ են իրանց բոլոր յարմարութիւններով, իսկ մնացած մասի կառուցումը մնաց գարնան լրացնելու։ Սուլտայի ծխական դպրոցի նոր շէնքը պատիւ է բերում սուլտացիների անուան. նոր դպրոցի կառուցման գործում մեծ ջանքեր է թափել պ. Յովհաննէս Մալխասեան։ Ամբողջ Ջաւախքի գիւղերում չկայ մի այդպիսի դպրոցական շէնք. գիւղիս ծխական դպրոցի գրադարանը ունէր մօտ 800 կտոր գիրք հայերէն և ռուսերէն, նոյնպէս մեր պարբերական լրագրներից, շաբաթաթերթերից և ամսագրերից, որոնք այսօր չեն երևում Մի մասը գրքերից չը գիտենք ինչ պատճառով մնում է փոշիների տակ ծածկուած «մի գիւղացու» տանը, որ դպրոցի և գրադարանի հետ ոչ մի առնչութիւն չունի... Յուսով ենք, որ ներկայ հոգաբարձութիւնը այժմ ցրիւ եկած գրքերը կը հաւաքէ։ Ջաւախքի ոչ մի գիւղում այնքան թերթ չի ստացւում, որքան Սուլտայում։ Այս ներկայ տարում գիւղումս ստացւում է հետևեալ հայերէն և ռուսերէն լրագրներ՝ «Հորիզոն», «Արարատ», «Համբաւաբեր», «Աշխատանք», «Արև», «Մշակ», «Առողջ կեանք», «Գիւղատնտես», „Армянскій Вѣстникъ“, „Армяне и Война“ և „Кавказское Слово“. դեռ շատերը նոր են բաժանորդագրւում թերթերին։ Ցանկալի է, որ հայ լրագիրը Ջաւախքի բոլոր գիւղերում տարածուի. այդ պարտականութիւնը ընկնում է կատարելու գիւղական քահանայի և ուսուցչի և գիւղում ապրող բանգէտ մարդկանց վրայ։

—Ներկայ տարուայ յունուարի 1-ից մինչև 23-ը ծաղիկ հիւանդութիւնից մահացել են Սուլտայում առանց բժշկի խնամքի 30 երեխայ մինչև 12 տարեկան. դեռ ևս շարունակւում է գիւղումս այդ հիւանդութիւնը։ Ամեն օր կենսական մթերքների գները բարձրանում է. թէյ խմելը երազ է դարձել. մէկ սոմար ցորենը ծախւում է 100 ռուբլու, գարունը 60 ռ., թանկ է և եղը, կովը, ոչխարը և ամեն ինչ։ Շրջակայ գիւղերում երևացել է ոչխարների մէջ «թափանակ» կոչուած հիւանդութիւնը և կոտորւում են։ Մինչև օրս կանոնաւոր ձիւն չէ եկել մեզանում։ Գիւղումս կան շատ խեղճ ու կրակ ընտանիքներ, կարօտ հացի, չորեղէնի։ Ռուսատանի ալիւր չկայ Ախալքալաքում, շատ գիւղացիներ գնում են և դատարկ յետ գալիս։ Ջաւախքի գիւղացիներից շատերը սկսել են «նշանադրել» իրանց 13—14 տարեկան տղայոց մեծահասակ օրիորդների հետ. այդ վնասակար բայլից պէտք է յետ կանգնել։

*Արսէն քահ. Բլըցեան*

և վերսկսման պայմանաժամը նշանակել ոչ ուշ՝ քան 1917 թ. ապրիլ ամիսը, նկատի առնելով արտակարգ հանգամանքները»։

Նկատի ունենալով այդ «արտակարգ հանգամանքները» մենք դեռ անցեալ շաբաթ գրել էինք. «Հաւանօրէն ոչ ժողովուրդը կը կարողանայ իր խօսքը ասել նրան (Պետ. Դումային), ոչ էլ սա իր խօսքը—ժողովուրդին... Այսօր էլ գալիս է նա մի համր դիմակախաղ եւս կատարելու և նորից ցրուելու, մինչև որ ռուսական հասարակական կեանքը իւր զարգացմամբ կը կանգնի իսկական պարլամենտական ճանապարհի վրայ»։

Այսօր, իր գործունէութեան երկրորդ շաբթի վերջին այդ «պարլամենտը» նորից չկայ։ Կը լինի՞ այդ վերջին ցրումը, և հասե՞լ է արդեօք ռուս հասարակական կեանքի համար «իսկական պարլամենտական ճանապարհի վրայ կանգնելու» ժամը՝ այդ այսօր հաստատ չգիտենք... Վ.

---

## ՎԱՂՈՒԱՅ ՀԱՅ ԳԻՒՂԸ

### ՆԵՐԿԱՅ ՎԻՃԱԿԸ

Ներկայ ահաւոր պատերազմը, մի շարք կենսական ու հանրային հարցերու հետ, պատճառ տուած է մտածելու նաև գիւղի վաղուայ վիճակի մասին։ Պատերազմին մասնակցող եւրոպական պետութիւնները, ընկերութիւնները, դասակարգերը այժմէն իսկ մտահոգուել սկսած-են ներկայիս քանդուած ու վաղը շինուելիք ամբողջ գիւղերու, գիւղական շինութիւններու, նախկին ձեռնարկներու, հողի աւելի արդիւնաւոր մշակման ծրագրներով, որոնք հրապարակ դրուած են. կը վիճուեն, կը ծեծուեն ու ընդհանուր եզրակացութիւններ կը հանուեն՝ պատերազմէն անմիջապէս յետոյ գործադրելու համար։

Երկար ժամանակէ ի վեր գիւղն ու գիւղական կեանքը վարչութիւններու, պետական մարմիններու և ընկերութիւններու մտահոգութեան առարկայ եղած էին այն պարզ պատճառով, որ նոյնիսկ Եւրոպայի մէջ—տեղի ու կարիքներու համեմատ—գիւղը չունէր մասամբ վայել ապրելու դիւրութիւններ, որ գիւղական կեանքը կորցրած էր իւր աւանդական հաճոյքն ու դիւթանքը, որ գիւղացին այլեւս իրեն կապուած չէր զգում իւր հողին ու օճախին և դէպի քաղաքներու գործարաններ վազող խումբ խումբ երիտասարդ ույժերու հետ գիւղը կը լքէին գիւղի «կարմրերես» ու «փամփլիկ» աղջիկներ ալ, այնտեղ՝ քաղաքի մէջ դժկանելու ու նիհարանալու կանխաորոշումով։

Եղած վիճակագրութիւններն և ուսումնասիրութիւնները արդէն հաստատած էին, որ եւրոպական գիւղը ոչ միայն կը պարպուէր, ոչ միայն գիւղական կեանքը կորսնցուցած էր իւր հաճոյքն ու հրապոյրը, այլ նաև եղած հողը անբաւական էր բնակչութեան համար, որովհետև ընտանիքներրի մէջ բաժանուելով տրուած տարածութիւնները, վերջիններս քիչ-քիչ փոքրացած, սահմանափակած ու ուժասպառ եղած էին անընդհատ մշակութիւններու հետևանքով։

Հողի ուժասպառումը, աշխատող ձեռքերու նուաճումը յառաջ բերած էին այն միտքը, թէ ինչպէ՞ս ընելու է աւելի արդիւնք ստանալու համար հողի նոյն տարածութիւնէն են և ինչո՞վ փոխարինել պակասող ձեռքերը, ինչպէ՞ս դիւրեկան դարձնել գիւղն ու գիւղի կեանքը։ Հողի պարարտացման նոր միջոցներու, նոր տեսակի քիմիական աղբերու. մշակման նոր ձեւերու հետ միասին ծրագրուեցին ու շինուեցին բազմատեսակ մեքենաներ, որոնք կը փոխարինէին պակասող ձեռքերը։ Նոր տեսակի դութաններու, արօրներու, ցանող, հնձող, կալսող մեքենաներու շինութիւնն ու ընդունելութիւնը տարածուեցաւ ամեն տեղ ու ամեն գիւղի մէջ։

Այս բոլորով, սակայն, չէր վերջանում գործը։

Նոր միջոցներու և նոր գործիքներու ընդունելութիւնը դիւրամատչելի ու ընդհանուր դարձնելու համար կազմուեցին գիւղական, համայնական, գաւառական, նահանգական աշխատակցող ընկերութիւններ, միութիւններ, դրամատուներ, փոխատու մարմիններ, որոնք ճիւղաւորուեցին ամեն տեղ ու ամեն ընտանիքի մէջ։

Պահ մը կարծուեցաւ, որ գիւղը իւր տեղը պիտի մնար։ Բայց այդ երեւոյթի փայլը շուտով անհետացաւ ու «դէպի քաղաք» հոսանքը նորէն ծայր տուաւ։

«Գիւղը կեղտոտ է, փողոցները նեղլիկ, տուները պստլիկ, մթնոլորդը ապականուած, հորիզոնը սահմանափակ. չկան թատրոն, երաժշտութիւն, պարահանդէս, տօն օրերու քաղքենի զուարճութիւններ, հաւաքական ու ընտանեկան կեանք։ Գիւղի խրճիթի պատը նկարներ չունի, պատուհանը՝ ծաղկեթաղար. գիւղի խրճիթի մէջ կապրին տէրն ու ծառան, ծնողքն ու զաւակները. բոլորը միասին ու խոհանոցը ննջասենեակի կողքին, որոնք յաճախ կապականին մօտիկ գտնուած գոմի ու ախոռի վատառողջ օդի շնորհիւ և այլն»։

Եւ «դէպի քաղաք», դէպի թատրոն ու պաշտօն վազելու արշաւը կանգ չառաւ։

Դեռ կը յիշենք պատերազմի յայտարարութեան թուականէն առաջ—ուսանողութեան տարիներուն—այն յուսահատեցուցիչ խօսքերը, որ յաճախ կարտասանէր Նանսու (Ֆրանսա) Երկ. Դպրոցի տեսուչը՝ ի տես պարպման ու գիւղական կեանքի լքման։ Դեռ կը յիշենք մի առ մի ֆրանսերէն երկրագործական թերթերու-հանդէսներու յօդուածները նոյն այդ նիւթի շուրջը, երբ ահազանգը հնչեցնում էին գիւղի մօտալուտ խորտակումը կանխատեսելով։ Նոյնը նաև Բելժիքայի համար, Զուիցերիոյ, Իտալիոյ, Գերմանիոյ համար։

Քաղաքը կլանում էր գիւղը։ Գիւղը պարպւում էր և քաղաքը բազմանում։

Այսօր, սակայն, տարբեր իրողութիւններ յառաջ եկած են Եւրոպայի մէջ՝ պատերազմին հետևանքով։ Ամեն ինչ քանդուած, ամեն ինչ տակն ու վրայ։ Նորէն շինելու, նորէն ձեռնարկելու ու նորէն գիւղը վերականգնելու նախապատրաստութիւններ են տեսնւում այնտեղ և, ինչ որ կուզէինք ամենէն աւելի շեշտել, այդ նախապատրաստութիւններու առեն ոչ մէկ անգամ չեն անտեսում երէկուայ իրողութիւնները։ Ձգտելով վերականգնել աւերակ գիւղը, ձգտում էին նաև որ գիւղական կեանքն ունենայ իւր վաղեմի հրապոյրը ժամանակիս պահանջներու համաձայն. այնտեղ աշխատում էին վերաշինել «նոր գիւղ», որպէսզի գեղջուկն ու գեղջկուհին չլքեն. այնտեղ ծրագրում են հողի աշխատութիւնը, հողի բերքը, զայն մարմնաւորող հաճոյքն ու քրտինքը նկատել գիւղական խրճիթի որմերուն վրայ՝ որպէս օրինակ յաջողներուն, և պատուհանին մէջ ունենալ մի ծաղկեթաղար՝ հանգստի ժամերուն հոգեկան բաւականութեան ի նպաստ։ «Նոր գիւղի» մէջ նոր սերունդը պիտի բարձրանայ նոր ձգտումներու պատրաստ ու երէկուան ահաւոր պատմութեան գիտակ։ «Նոր գիւղը» նոր հողի մշակութեան ու առատ արդիւնաբերութեան վայրը պիտի լինի՝ իր ծոցին մէջ պահելով գիւղի ու ամբողջ ժողովուրդի կեանքը, գոյութիւնը, ապրուստն ու կապուստը։ Այս հաստատում են մեր ստացած ֆրանսերէն քաղաքական օրաթերթերն ու երկրագործական հանդէսները։

Ահա նոր շարժման ու նոր ծրագիրներու անփոփումը մասնաւորապէս Ֆրանսայի մէջ, որը միշտ եղած է նորութեան ու նորոյթի օճախը։

Պիտի կարողանա՞նք հետևել այս գեղեցիկ ու դրական օրինակին։

Ա. Մարտապետեան

(Շարունակութիւնը հետևեալով)

## ԳԵՂԵՑԻԿ ՁԵՌՆԱՐԿՈՒԹԻՒՆ

Փախստականներին ապրուստի միջոցներ հայթայթելու համար ամենագեղեցիկ և պատուաբեր ձևն է նրանց աշխատանք տալ։ Այդ տեսակէտից ես ողջունում եմ վանուհիների միութիւնը, որը բացել է Թիֆլիսում մի արհեստանոց փախստական կանանց և օրիորդների համար։

Միութեան անդամներ՝ տ. տ. Խրիմեան, Սափարեան, Սեմերջեան, օր. օր. Սրվանտեան, Միրզախանեան և Փաշալեան մեծ եռանդով սկսել են գործը և կարճ ժամանակամիջոցում նկատելի է յառաջադիմութիւնը։

Արհեստանոցում զբաղւում են 15 հոգի գուլպայագործութեամբ և 15 հոգի կար ու ձևի բաժանմունքում։

Բացի այդ 20-ից աւելի կին ստանում են արհեստանոցից հում նիւթեր և իրանց տներում պատրաստում են ասեղնագործեր և ուրիշ ձեռագործեր, որ բերում են արհեստանոց ծախելու համար։

Միութիւնը ստացել է սկզբնական կարիքների համար՝ 1000 ռուբլի Օրիորդաց կոմիտէից և 3000 ռ. օր. Ռուբինսոնից Լոնդոնից, որոնցով ձեռք են բերուել մեքենաներ, անհրաժեշտ կահկարասիք և հում նիւթեր։

Միութեան դրամները սպառուելու վրայ են, ուստի հարկաւոր է օգնութեան հասնել, որպէսզի այդ գեղեցիկ ձեռնարկութիւնը չը դադարի։ Հրաւիրում եմ մեր հասարակութեան գիտակից անհատներին, որպէսզի պատուէրներ անեն արհեստանոցին, որով հնարաւորութիւն կը տան արհեստանոցի գոյութիւնը պահպանելուն։

Արհեստանոցը գտնւում է Բրոսսէ փողոցում և Վոզդվիժենյա անկիւն № 16 *)։

Իշխ. Մ. Թումանեան

---

## Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԸՆԴ. ԺՈՂՈՎԸ **)

(Շարունակութիւն)

Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեան ընդհ. զեկուցում տուեց Կ. Հ. Բ. Ընկ.-թեան բացած հիւանդանոցի մասին։ Ընկերութիւնը բացել էր հիւանդանոց այն ժամանակ, երբ դեռ չկար փախստականների հոսանքը և Ընկերութեան միջոցները ներում էին։ Հիւանդանոց բացուեց 1914 թուի նոյեմբերին և շարունակուեց մինչև 1916-ի մայիսը։ Սակայն երբ գաղթականութիւնն սկսուեց և Ընկերութիւնը գաղթականների գործով սկսեց զբաղուել, մահճակալների համար նուիրատուների թիւը պակասեց։ Իսկ երբ ռուսական Կարմիր Խաչը մի յայտարարութեամբ դիմեց տարբեր ընկերութիւնների բացած հիւանդանոցներին, որ դնեն իր տրամադրութեան ներքև, Բարեգործ. Ընկերութիւնն այդ յայտարարութեան հիմամբ դիմեց և ստացաւ նիւթական օժանդակութիւն։

Այնուհետև ընդհ. ժողովը անցաւ 1917 թ. նախահաշուի քննութեան, որ տպագրուած թերթիկներով բաժանուել էլ Ընկերութեան անդամներին։

Այդ նախահաշուից երևաց, որ Ընկ. կենտրոնը 1917 թուին մուտք և ելք կունենայ 152,099 ռ.։ Իսկ ճիւղերի նախահաշիւն հետևեալն է. Արդուինի ճիւղի մուտք և ելքը՝ 989 ռ. 10 կ.։ Տրապիզոնի՝ 8,200 ռ.։ Սուխումի՝ 1,410 ռ.։ Ցխինվալի՝ 493 ռ. 20 կ.։ Երևանի՝ 6,700 ռ.։ Աբասթումանի՝ 860 ռ.։ Գորիսի՝ 300 ռ. 76 կ.։ Տուապսէի՝ 3,400 ռ.։ Ճարսկիէ Կոլոդցի՝ 150 ռ.։ Քարվանսարայի՝ 201 ռ. 33 կ.։ Շուլաւէրի՝ մուտք 1,965 ռ., ելքը՝ 1,020 ռ.։ Շուշու՝ 1,595 ռ.։ Գրոզնու՝ 2,800 ռ.։ Դիլիջանի՝ 738 81 կ.։ Ղազախի՝ 210 ռ. 10 կ.։ Սղնախի՝ 1,100 ռ.։ Ղայաբաշի՝ 215 ռ.։ Թեմիր-Խան-Շուրայի՝ 231 ռ.։ Բաշ-գիւղի՝ 544 ռ. 61 կ.։ Սուրամի՝ 285 ռ.։ Պեատիգորսկու՝ 2,594 ռ.։ Կախ-Աւանի՝ 205 ռ.։ Օնու՝ մուտք 145 ռ. 60 կ., ելքը 58 ռ. 25 կ.։ Ղզլարի՝ մուտք 1,637 ռ. 66 կ., ելքը 670 ռ.։ Մեղրու՝ մուտք 421 ռ., ելքը 271 ռ.։ Գորուայ՝ մուտք 399 ռ. 51 կ., ելքը 98 ռ.։ Բաթումի՝ 32,040 ռ.։ Վարդաշէնի՝ 103 ռ.։ Վլադիկաւկազի՝ 4,690 ռ.։ Սողու՝ 911 ռ. 40 կ.։ Ախալցխայի՝ 31,680 ռ.։ Նուխու՝ 1,658 ռ.։ Սաչխերէթի՝ մուտք 140 ռ., ելք 137 ռ.։

Նախահաշուի քննութիւնից յետոյ եղաւ կարծիքների փոխանակութիւն։

Պ. Իսահակ Յարութիւնեանի փոքրիկ բացատրութիւնից երևաց, որ եթէ այս աննպաստ պայմանները շարունակուեն, Ընկերութիւնը ստիպուած պիտի լինի կրճատել ուսումնարանների թիւը, հասցնելով մինչև 40-ի, որպէսզի կարելի լինի այդ նախահաշուով պահպանել ուսման նորմա։ Իսկ եթէ Ընկերութիւնը շարունակէ պահպանել դպրոցների նոյն թիւը, այն ժամանակ բիւջէն պիտի հասցնել 50 հազարի, ինչ որ անկարելի է այդ Ընկերութեան համար։ Իշխ. Բորիս Արղութեանի առաջարկով որոշւում է հրաւիրել ճիւղերին օգնելու և օժանդակելու կենտրոնին։

Պ. Յ. Տէր-Միրաքեանը առաջարկում է Ընկերութեան դըպրոցական կառավարութեան հարցում համաձայնութեան գալ թեմական հոգևոր իշխանութիւնների հետ և միացեալ ուժերով պահել աւելի թուով թեմական տեսուչները։ Առաջարկը թեր և դէմ քննութեան է ենթարկւում։ Հարցերի շատութեան պատճառով խնդիրը թողնւում է յետագայ ժողովին, որի համար Ընկերութեան Խորհուրդը յատուկ զեկուցում պիտի կազմի։

Անցնելով նախահաշուի միւս կէտերին, պ. Շիրինեան առաջարկում է խաղատոմսեր ծախել և գնել տոկոսաբեր թղթեր, իսկ կանխիկ դրամն էլ վերածել շահագործման։ Վճռւում է կազմել մանրամասն զեկուցում առաջիկայ ժողովի համար։

Նախահաշուի մի քանի կէտերի համար բացատրութիւն է տալիս Ընկերութեան քարտուղար պ. Յ. Շահնազարեան։ Ապա հաստատւում Ընկերութեան, ինչպէս և ճիւղերի 1917 թուի նախահաշիւը։

Այնուհետև Հ. Կ. Կոմիտէի կողմից պ. Շարաֆեանը տուեց զեկուցում Կոմիտէի գործունէութեան։ Հայկական կենտրոնական Կոմիտէն ունեցել է եռանդուն գործունէութիւն տեղի ունեցած չորս նահանջների ժամանակ. այն է՝ Քեօփր-Քէոյ, Սարիղամիշ-Պարսկաստան-Ալաշկերտի, Վան-Մանազկերտի և Խնուս Մուշի։

Կոմիտէն բաժանել է հագուստներ 1915—16-ի ձմեռը 48,120 կտոր 213 վայրում։ Գլխաւորապէս 1915 թ. և մասամբ 1916 թ. ունեցել է 10 հիւանդանոց իր բժիշկներով և կազմով, 16 սնընդատու կայան, որոնք գլխաւորապէս նահանջների ժամանակ տասնեակ հազարաւոր գաղթականներին սնունդ են մատակարարել։

Կենտ. Կոմիտէն բացել է 1914—15 ուս. թուին 40 դպրոց 3,740 աշակերտով, իսկ 1916—17 ուս. թուին 155 դպրոց 11,077 աշակերտ. դպրոցները կառավարում է առանձին յանձնաժողով։

Հայկ. Կենտր. Կոմիտէի հովանաւորութեան տակ գտնւում է 52 որբանոց 4763 որբերով։ Բացի այդ ունի բացած 15 արհեստանոց և երեք վայրում բանջարանոց։

Հայկական Կենտ. Կոմիտէն օգնել է գաղթականութեան ցանքի համար, Վանի շրջանում գեներալ Թամամշեանի յանձնարարութեամբ և իր միջոցներով Ղարսի շրջանում։ Կոմիտէն նոյնպէս գեներալ Թամամշեանի յանձնարարութեամբ կատարել է

---

*) «Համբաւաբերի» խմբագրութիւնը սիրով յանձն է առնում դրամական նուէրներ ստանալու և հասցնելու այդ օգտաշատ արհեստանոցին։ Խմբ.

**) Տես «Համբաւաբեր» № 8։

## ՄԻ ՓԱՐՈՍ ՊԱՏՄԱԿԱՆ ՎԱՅՈՑ ՁՈՐՈՒՄ

—

*Նախիջևան, 23 փետրուարի*

Մտաւորական և կուլտուրական յետամնացութեամբ՝ մեր հայկական գաւառներից՝ թերևս ոչ մէկը Վայոց Ձորի «Դարալագեազ»-ին հաւասարուելու անբաղդութիւնը չունի—չնայած նրա միջնադարեան ծաղկած վիճակին: Առ այս՝ բաւական է մի հայեացք ձգել Եղէգիսի, Ամաղու, Այասսի, Մարտիրոսի, Հէր-հէրի, Թանահատի, Շահարունիքի, Շադինու... ճարտարապետիւս և գեղարուեստական նրբութեամբ յօրինուած վանքերի, յուշարձանների վրայ:

Թէպէտ Դարալագեազի բոլոր գիւղերն առ հասարակ ունին օտարութեան մէջ միջոցի և կարողութեան տէր տասնաւոր անձինք, սակայն՝ ցայսօր նրանք միանգամայն անտարբեր են դէպի իրենց փառաւոր հայրենիք՝ հայկական Շւէցարիան, Վայոց Ձորի յառաջադիմութեան:

Ուրախ եմ յայտնելու սակայն, որ Աղաւակ գիւղացի Նահապետ, Պետրոս և Անուշաւան Յարութիւնեանց եղբայրները որոշել են իրենց հայրենի գիւղում կառուցանելու երկդասեան հոյակապ երկսեռ դպրոց, կահաւորելու այն՝ ամենայն յարմարութեամբ և տարէց տարի վճարելու բոլոր դպրոցական ծախքը, իսկ ժողովուրդը պարտաւորուել է տալու դպրոցատեղին միայն:

Կազմուած—վաւերացրած համախօսականը ուղարկեցի հոգևոր բարձրագոյն իշխանութեան տնօրէնութեան:

Հաւատացած եմ, որ այս օրինակելի ձեռնարկութիւնը կը հրաւիրէ և ուրիշներին՝ զարթեցնելու իրենց գեղեցիկ հայրենիքը թմրութեան մրափից. որի համար պատուական թերթիդ միջոցաւ յայտնում եմ օրհնալիր շնորհակալութիւն:

*Փոխանորդ Հին-Նախիջևանի՝ Սիոն Վարդապետ*

—

*Քութայիս.*—Փետրուարի 5-ին քութայիսաբնակ պ. Ստեփան Թումանջեանի տանը, հարսանիքին, Յուսիկ քահ. Ապրեսեանը նկարագրելով Տաճկաստանի գերի հայերի վիճակը առաջարկեց չմոռանալ այդ տառապեալներին. իսկոյն ժողովուեց 125 ռուբլի, որ և ուղարկուեց Թիֆլիս ըստ պատկանելոյն:

—

## ՏԱՐԵԳԻՐ Կ. Հ. Բ. Ը.-ԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ընկ.-ութեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Թեմիր Խան Շուրայի ճիւղից 50 ռ. յօգուտ փախստականների:

— Սուսաննա Յովհաննիսեան Բայսողոլեանից 100 ռ. յօգուտ «մի հայ մի ոսկի» ֆոնդի:

— „Тиф. Лист."-ի խմբագրութեան միջոցով Մ. Գ. Փիրումեանից ի յիշատակ հանգ. Ս. Ի. Փիրումեանի յօգուտ ճաշարանի 100 ռուբլի:

— Եղիսաբեթ Շահկալամեանից ի յիշատակ իւր քոյր Ս. Թ. Խիթարեանի յօգուտ ճաշարանի 25 ռ.:

— Մ. Բ.-ից յօգուտ հայ գերիների ազատագրման 36 ռ.:

— Վարոնէժից Նիկոլայ Շուբինովից յօգուտ Էրզրումի հայերի 2 ռ.:

—

Պետրոգրադից պ. Արշակ Պետրոսեան Ունանեանը յայտնում է Խորհրդին, թէ դպրոցական գործի համար յատկացնում է տարեկան 12,000 ռ.: Խորհուրդը շնորհակալութիւն յայտնելով որոշեց բացուելիք դպրոցների ծրագիրը մշակել ապագայում, և դպրոցներ բանալ սեպտ. 1-ից, իսկ սոյն դպրոցական տարուանից գումար յատկացնել բացուող դպրոցների համար դպրոցական պիտոյքներ գնելու և տալ բարերարին մշտական անդամութեան մրցագիր (ДИПЛОМЪ):

### ԳՐԱԴԱՐԱՆ-ԸՆԹԵՐՑԱՐԱՆ

Փետրուարին Կ. Հ. Բ. Ընկ.-ութեան գրադարանից տուած է ընթերցանութեան համար 5,062 գիրք, որից հայերէն 3,852 և ռուսերէն 1,210 կտոր: Ընթերցարան են յաճախել 5,800 հոգի, 3,100 կին և 2,700 այր:

### ՆՊԱՍՏԱԲԱՇԽ ՄԱՍՆԱԺՈՂՈՎ

Հ. Կ. Կոմիտէի նպաստաբաշխ մասնաժողովի միջոցով, 917 թ. յունուարի 30-ից մինչև փետրուարի 25-ը 258 գաղթականի տրուած է 855 ռ. 57 կ. նպաստ:

### ՃԻՒՂԵՐ

Դիլիջանի Բարեգ. Ընկ. ճիւղի վարչութիւնը ներկայացնելով կենտրոնին 1916 թուի հաշիւները, յունուարի 15-ին գումարեց ընդհանուր ժողով, ուր վարչութիւնը ներկայացրեց իւր հրաժարականը:

Ժողովը հաստատելով և ընդունելով արձանագրութիւնը, հրաժարականը, ընտրեց վարչութեան նոր անդամներ՝ պ. պ. Ս. Մամեան, Գ. Մէհրաբեան, Վ. Սարգսեան, Գ. Դաւթեան, Մ. Այվազեան:

## Քրոնիկոն

Փետրուարի 27-ին կայացած դումայի նիստում, որոշւում է տրամվայի ծառայողների ռոճիկները աւելացնել 100,000 ռուբլով, մինչև 100 ստացողներին, յաւելումը հաշուելով տարուս յունուարի 1-ից:

— Երզնկայում փախստականների համար սննդատու կայան է բացուել:

— Քաղաքային վարչութեան անդամ իշխ. Ա. Արղութեան Երկայնաբազուկը հաստատուած է քաղաքագլխի պաշտօնակատարի պաշտօնում:

— Փետրուարի 25-ին վախճանուեց Երևանի թեմական դպրոցի տեսուչ Արշակ Չիլինգարեանը:

— Փետրուարի 26-ին առաւօտեան ժամը 10-ին կայացաւ «Վրաց Գրագիտութիւն տարածող Ընկ.» Թիֆլիսի բաժանմունքի հիմնադիր ժողովը, որին ներկայ էին երկու հազար չորս հարիւր անդամ: Ժողովում եղան ընտրութիւններ: Ժողովը վերջացաւ գիշերուայ ժամը 12-ին:

— Հանգուցեալ Վարվառէ Թամամշեանը կտակով թողել է 50,000 ռուբլի, որից 30,000 ռ. նպաստ է տրուելու չքաւոր հայ ուսանողներին, 10,000 ռ. Գայիանեան օր. դպրոցին և 10,000 ռ. Նորաշէնի ծխական դպրոցին և Կուսանաց ս. Ստեփաննոս եկեղեցուն:

— Թաղային հոգաբարձուների խորհուրդը որոշել է քաղաքում բաց անել հինգ պարենաւորման խանութ յատկապէս արհեստաւորների ընտանիքների համար:

— Թիֆլիս է եկել բանաստեղծ Ալ. Ծատուրեան: Նա տառապում է սրտի թուլութիւնից:

— Փետրուարի 1-ին Թիֆլիսի Միքայէլեան հիւանդանոցում վարակիչ հիւանդութեամբ վախճանուեց Վանի նախկին շրջանապետ գնդապետ Ալֆէէդ Տէրմէնը:

— Ուրախութեամբ լսում ենք, որ Գորի քաղաքում մի խումբ հայ գրասէրներ կազմակերպում են դասախօսութիւններ և երեկոյթներ տեղացի հայերին հայոց գրականութեան ծանօթացնելու։

# Գեղարուեստ

## ՏՐՏՈՒՆՋ

(«Արցունք,—Բարձունք» գրքից)

Եթէ Աստուած մ'ես դուն՝ արդարադատ, հսկա
հառաչանքըս լսի՛ր, տառապանքըս ըզգա՛...
եթէ Աստուած մ'ես դուն՝ արդարադատ, հսկա։

Ինձ սիրտ տուիր, ինչո՞ւ, յաւէրժասէր, թևող,
երբ սէրը լոկ կիրք էր՝ մի ակընթարթ տևող...
ինձ սիրտ տուիր, ինչո՞ւ, յաւէրժասէր, թևող։

Ու տեսք տուիր ինձի՝ կերպարանքիդ հանգոյն,
ինչպէս մարդկանց բոլոր՝ ստորաքարշ, անգոյն. .
ու տեսք տուիր ինձի՝ կերպարանքիդ հանգոյն։

Ինձ կարգեցիր իշխան երկրի ամեն չնչին,
չէ՞ որ մահուանն եմ ես, գերի՝ կրքիս չնչին...
ինձ կարգեցիր իշխան երկրի ամեն չնչին։

Ինչի՞ս է պէտք, ինչի՞ս, մարդկային միտք, հանճար,
երբ մութի մէջ կուլամ, կը խարխափեմ անճար...
ինչի՞ս է պէտք, ինչի՞ս, մարդկային միտք, հանճար։

Մի հիւլէ եմ տարուող և ինձ կ'ատեմ արդէն,
կը խորշեմ ես կեանքէն, կը խորշեմ ես մարդէն...
մի հիւլէ եմ տարուող և ինձ կ'ատեմ արդէն։

Օ՛, կամաչեմ հիմա՝ չէ՞ որ մարդ եմ, դահիճ.
որ աստուած եմ քեզ պէս՝ ընկած աղտի ճահիճ...
օ՛, կամաչեմ հիմա՝ չէ՞ որ մարդ եմ, դահիճ։

Ինչ որ տուիր՝ վերցո՛ւր, ինձմէ ետ առ նորէն,
ես չեմ ուզեր ըզգալ, ոչ ալ լինել Որ էն...
ինչ որ տուիր՝ վերցո՛ւր, ետ առ, ետ առ նորէն։

Եթէ Աստուած մ'ես դուն՝ արդարադատ, հսկա,
հառաչանքըս լսի՛ր, տառապանքըս ըզգա՛...
եթէ Աստուած մ'ես դուն՝ արդարադատ, հսկա։

Թիֆլիս ԱԶԱՏ-ՎՇՏՈՒՆԻ

## ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ *)

### Գ.

### ԱՐՁԱՆԱԳՈՐԾ ԳԻՒՐՋԵԱՆ

Ահա մի արուեստագէտ, որի գործերի վրայ պարզօրէն դրուած է տաղանդի կնիք. գիպսից, բրոնզից և մարմարիոնից կերտած 7 հատ արձան է ցուցադրել սա, որոնցից ամեն մէկը լուրջ ուսումնասիրութեան և գեղարուեստական յաջող վերամշակման արդիւնք է։ Հայերս համարեա արձանագործութիւն չենք ունեցել 19-րդ դարում. Գիւրջեանը մի տարօրինակ թռիչք է հենց սկզբից. սակայն այսու պարզւում է ի հարկ է, որ նա այլ կուլտուրաների արդիւնք է։

Նրա գործերի վրայ երևում է աստուածային, Ռոդէնի ազդեցութեան հետքերը։ Հաւանօրէն Գիւրջեանը աշակերտել է նրան, կամ ուսումնասիրութեան առարկայ դարձրել նրա գեղարուեստական ստեղծագործութիւնները։

Ինձ ծանօթ Ռոդէնի երկերի մէջ երկու հիմնական գիծ եմ նկատել. որոշ արձանների մէջ նա տալիս է մարմնի, մարդու արտաքինի գեղեցկութիւնը՝ առանց հոգեկան կեանք արձանների մէջ առանձնապէս շեշտելու ցանկութեան. արձանների մէջ նրան հետաքրքրում է մարդու այն արտաքինը, երբ աչքերի, ունքերի, ճակատի, կզակի, շրթունքների, ձեռքերի, ոտքերի և մարմնի այլ մասերի մէջ արտայայտութիւն է գտնում հոգու որ և է վիճակը, լինի այդ տանջանք, լինի այդ մտածմունք (Մտածողը), լինի այդ կրօնական տրամադրութիւն (Յովհաննէս Մկրտիչ), թէ մի այլ բան, այդ միևնոյն է այդ մեծ գեղարուեստագէտի համար։ Ներքին-հոգեկան կեանք և արտաքին-ձևական գեղեցկութիւն և— ահա Ռոդէնի ծրագիրը։

Գիւրջեանը ճիշտ և ճիշտ այդ ծրագրով է աշխատում. Նրա մարմարիոնէ երկու արձանները պ. և օր. Մ.-երը, արտաքին գեղեցկութեան արտայայտութիւններ են, մանաւանդ պ. Մ.-ի արձանը. արձանագործին հետաքրքրել է երիտասարդի համաչափ դիմագծերը, մազերի նուրբ ալիքները, դէմքի պայծառ մեղմութիւնը։ Այդ դէմքի ետևը հոգեկան բարդ, նոյն իսկ պարզ կեանք չի երևում, և ինչու էլ երևայ, քանի որ արձանագործն ցանկացել է արտայայտել մարդու արտաքին-ֆիզիքական գեղեցկութիւնը աւելի յունական տրամադրութեամբ։ Մ. Գորկու արձանը նոյն ոգով է ստեղծագործած, սակայն այստեղ Գիւրջեանին աւելի զբաղեցրել է մարդու տգեղ, անհամաչափ և բաւական անդիւր, բայց իրական արտաքինը։

Սակայն սրանց կողքին Գիւրջեանն ունի մի քանի այլ արձաններ, որոնք հոգեկան նոյնիսկ բարդ կեանքի արտայայտութեան յաջողակ փորձեր են։

Առնենք Շալեապինի արձանը. հռչակաւոր գեղարուեստագէտը, գլուխը յաղթական դէպի վեր է բարձրացել փոքր ինչ թեք, ունքերը իրար են մօտեցել, ճակատի վրայ նկատելի է լարում. աչքերը անասելի վճռականութեամբ, անսահման լարուածութեամբ յառուած են դէպի վերին անհունը. մազերի մի զօրեղ փունջ լայն ու բարձր պտոյտ է կազմում ճակատի վերևը և վճռական դէմքին տալիս յաղթական տեսք. շրթունքները իրար են սղմուած։ Ոչ թէ երգելու, այլ երգի յաղթ նոտաների արտասանութիւնից առաջ կամ յետոյ եղող մի վայրկեան է այս։

Անասելի մի բարձր ոգևորութիւն, մոլեխանդ մի տրամադրութիւն է իջած երգչի դէմքի վրայ. զգում ես, որ այդ վայրկեանին Շալեապինը գեղարուեստասէրների հազար-հազարներից կազմուած բանակներ կարող է քաշել իր ետևից դէպի այն գե-

*) Տես «Համբաւաբեր» № 7։

զարուեստական ինքնամոռացման աշխարհը, ուր սլանում է ինքը —երգիչը՝ իր այդ վայրկենի տեսքով։

Ով ուզում է պատկերացնել, թէ ինչ բան է գեղարուեստական արբեցումի մէջ եղող դէմքը, պէտք է տեսնէ Գիւրջեանի Շալեապինի արձանը։

Նոյն ոգով մի այլ արձան էլ ունի գաճից. խմբապետ Անդրանիկն է ներկայացուած խիստ դիմագծերով, իրար սղմուած շրթունքներով և յօնքերով. աչքերը մռայլ և խիստ կողք են ուղղուած. անողոք ու անդառնալի որոշումը տեղի է ունեցել և որոշման գործը կը յաջորդի ամենամեծ արգելքների դէպքում անգամ։ Այս արձանն էլ մի այլ տեսակի հոգեկան կեանքի աւելի քան յաջող արտայայտութեան օրինակ է։

Գիւրջեան արձանագործի աչքերը դիտում և ըմբռնում են մարդ-արարածի մարմնի արտաքին գեղեցկութիւնը, դիմագծերի նրբութիւնը, մկանների համաչափ ալիքաւորումները. մազերի փափկութիւնը, հոգեկան կեանքի պէս-պէս վիճակները, նրա մի հատիկ արձանը վեր է ածում ամբողջ թատերգի (օպերայի), (Շալեապին), կամ ռազմաբեմի (Անդրանիկ). այս երկու իրար հակոտնեայ աշխարհների ստեղծած ներկայացուցիչ տիպերի հոգեկան ամեն մէկինը իւրատեսակ բարդ կեանքը դիտել՝ ըմբռնել, վերամշակել է Գիւրջեանը, իսկ իրեն կամքին հնազանդ ձեռքերն էլ առարկայացում են տուել հոգու ապրածները։

Այս բոլոր արձանները գալիս են ասելու, որ Գիւրջեանը եթէ երիտասարդ է, նշանակում է շատ մեծ ապագայ ունի իր առջև։

Ահա թէ ով պէտք է կերտէր Խաչատուր Աբովեանի արձանը։

— —

## ՆԿԱՐԻՉՆԵՐ

Անցնենք ցուցահանդէսին մասնակցող միւս նկարիչներին։

Կազմակերպուած, մշակուած, որոշ ուղղութեան տէր նկարիչ է Ռեմբրանտին երկրպագու Երկանեանը, որ մասնակցում է ցուցահանդէսին երկու նկարով՝ պառաւ կինը ասեղ թելելիս, և էլի պառաւ կինը գետնախնձոր կճպելիս։

Միշտ էլ կարելի է առանց յագենալու նայել այս անչափ իրական և միևնոյն ժամանակ ներքին բովանդակութեամբ հարուստ նկարներին։

Իրականութեան նրբին ուսումնասիրութիւնը կցած է պառաւ կնոջ մշակուած բնութագրին և ստեղծած է մի շատ հաճելի ամբողջութիւն։

Հին նկարիչները (Լէօնարդօ, Ռէմբրանտ, Դիւրեր և այլն) մի մեծ ծրագիր ունէին. երևոյթների ռէալ վերարտադրութեան մէջ ուզում էին մտցնել պոէզիա, մշակում և հոգեկան կեանքի ներքին հարստութիւն։ Նրանց կատարելապէս յաջողւում էր այդ բանը։

Նոր նկարիչներից շատ շատերը չեն կարողանում համաչափութիւն պահել. կամ դառնում են գռեհիկ ռէալիստներ և կամ արտաքին աշխարհը իրենց հոգու մէջ այնպէս տարօրինակ կերպով են մշակում և կտաւի վրայ այնպիսի ձևեր ու մարմիններ են ստեղծում, որոնք ոչ թէ իրականին, այլ աւելի շատ ճիւաղների են նման։

Երկանեանը ազատ է այս անմիտ տարուբերումներից. նրա ոտքի տակի հողը հաստատ է. նա կանգնած է անցեալի մեծ վարպետների ստեղծած հիմունքների վրայ. այս տեսակէտից Երկանեանը մի բացառիկ տեղ ունի այս ցուցահանդէսի մէջ։ Սրա նկարների միջոցով հայ հասարակութեանն են մօտենում անցեալի մեծ վարպետները։

Շատ ափսոս, որ Երկանեանը այսքան քիչ նկարներ է ցուցադրել։

Նոյնպէս քիչ, փոքր, բայց հաճելի տպաւորութիւն թողնող նկարներով է մասնակցում ցուցահանդէսին Ախիկեանը։

Բաւականին շատ նկարներ ունի Յակոբեանը, որոնք սակայն ըստ երևոյթին մեծ ուշադրութիւն չեն առաջ բերում հասարակութեան մէջ, որովհետև նկարների մի մասը ծանօթ է հասարակութեան, մի երկուսը շատ սովորական գործերի տպաւորութիւն են թողնում. այս բոլորով հանդերձ այդ նկարների տէրը կանգնած է փորձուած, ուսումնասիրող մի նկարիչ, որը հաւանօրէն յաջորդ ցուցահանդէսին շատ աւելի ուշագրաւ գործերով կը մասնակցի։

Մի քանի փոքր գործեր ունի Էդգար Շահէնը, սակայն հենց այդ փոքր գործերով էլ երևում է անուանի նկարչի տաղանդի թափը։ Սա իսկական մտքով եւրոպացի նկարիչ է. որովհետև եւրոպացին, այն էլ Պարիզի կեանքին ծանօթը կարող է շքեղ կառքի մէջ այնքան սէգ (էլեգանտ) կեցուածք ունեցող և կարծես փրփուրից շինուած կին նկարել։ Շահէնի նկարների ամեն մի գծի մէջ հոգու մի աշխարհ կայ. ըստ երևոյթին սա աւելի գծերի, քան գոյների երաժիշտ-նկարիչ է։

Շատ ափսոս, որ սրա ցուցադրած գործերը շատ են քիչ, երեք հատ են։

Երիտասարդ նկարիչներից աչքի է ընկնում Սարեանը, թէև ոչ իր համբաւին համապատասխան չափով. հաւանօրէն նրա լաւ գործերը չեն ցուցադրուած։ Կը խօսեմ տիկ. Աֆր.-ի դիմանկարի մասին, թողնելով Սարեանի միւս նկարները, որովհետև այդ միւս նկարներին նայելու համար փոքր ինչ այլ աչքեր են հարկաւոր։ Տիկ. Աֆր.-ի դիմանկարը իւր ֆոնով անասելի խօսուն նկար է։ Սարեանը գոյների նկարիչ է, որքան նուրբ անցումներ գոյների, որքան ներդաշնակութիւն, մեղմութիւն, փափկութիւն, որքան նայում ես, այնքան գրաււում ես նկարով։ Սարեանի այս նկարի մէջ ես կայ գոյների երգ, գոյների սիմֆոնիա Թադէոսեանի նկարների պէս, այն տարբերութեամբ, որ Սարեանի գունահամ երգը աւելի լարային է։ Ամեն մէկն իր տեղն ու արժէքն ունի։

Ուշագրաւ է երիտասար նկարիչներից նաև Գաբաեւը, որը մերկ մարմինների նկարներով բազմազանութիւն է մտցնում ցուցահանդէսում, թէև մերկ մարմինների նկարները նրա ամենայաջող գործերը չեն։ Ջրաբեր թրքուհին և անբախտ հայուհի նկարները լաւ գրաւականներ են նկարչի ապագայի համար։ Կարողանում է ընտրել գրաւիչ նիւթեր, ստեղծում է հաճելի և խօսուն ֆոն. նայողի ուշադրութիւնը կարողանում է կենտրոնացնել. նկարների կոմպոզիցիան, թէև պարզ է լինում, բայց ընդհանրապէս յաջող է։ Կարողանում է մարդու հոգու ներսը նայել։

Այս բոլորը կայ, բայց ճիշտ ասած, և ոչ մէկն էլ դեռ զարգացած վիճակում չի արտայայտած։ Նկարիչը դեռ շատ մեծ յամառ աշխատանքի կարիք ունի։

Երիտասարդներից նկարիչ Շաբբաբչեանին զբաղեցնում է աւելի ազգագրական և դեկորատիւ նիւթը. այդ ուղղութեամբ էլ ուշադրութեան արժանի գործեր ունի։ Սակայն այս նկարչի երևակայութեան և ստեղծագործութեան թափը դեռ չի սկսել ուժեղ գործել։ Այս հանգամանքը մի փոքր սառնութիւն է առաջ բերում նրա նկարների մէջ։ Շաբբաբչեանը երիտասարդ է, և դեռ ասելու բան ունի։

Անուն չհանած երիտասարդներից աչքի են ընկնում Մար, Բեհբուդովա, Ռուբէն Յովհաննիսեան, Հազարապետեան (բանաստեղծ նկարը) և Գայֆաճեան, որի Сирень նկարը գոյների մի հրաշակերտ է. այս նկարիչը, թւում է ինձ, ապագայ ունի, եթէ լարուած աշխատանք ցոյց տայ։

Բաւականանք այսքանով և կցենք սրան նաև այն, որ ցուցահանդէսի զարդերը միմիայն սրանք չեն, ուրիշներն էլ կան.

բայց աւելի մեծ թիւ են կազմում նրանք, որոնք յաջորդ ցուցահանդէսներին են փայլ ստանալու։

Յուսանք և սպասենք, որ հայ արուեստագէտների յաջորդ ցուցահանդէսը շատ աւելի յաջող լինի։ Հաւատանք, որ հայ արուեստագէտները աստիճանաբար մեր կեանքի կուլտուրական զօրաւոր գործօններից մէկն են հանդիսանալու։

Գ. Եղիլեան

## ՍՏԱՑՈՒԱԾ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

Ստացանք «Գործ» գրական-գիտական-հասարակական ամսագրի № 2։

Գ. Եղիլեանի կազմած և Հ. Կ. Կոմիտէի հրատարակութիւն՝ «Գաղթականական որբանոցներ» գրքոյկը, էջ 48, գինը՝ 25 կ.։

«Արարատ» ամսագրի յունուարի համարը։

## ԱՅԼԵՒԱՅԼՔ

### ՍՊԱՆՈՒԹԻՒՆ «ՊԱՏԵՐԱԶՄԻ ԶԱՒԱԿԻ»

Ֆրանսիոյ Սենայի նահանգական դատարանում նորերս դատւում էր մի երիտասարդ կին իւր հարազատ մանկան սպանութեան պատճառաւ։ Մեղադրեալ Ժոզեֆինա Բարտելէմին իւր ոճրագործութիւնն արդարացնում էր ասելով, որ ինքը նորածնին սպանել է առանձին դրդումներով. նա գիտէր, որ իւր երեխայի հայրը իրեն անյայտ գերմանացի զինուոր էր, որ իրեն բռնութեամբ տիրել էր գերմանացիների ապատակութեան միջոցին և որ ինքը չէր կարող անգամ մտքով անցկացնել տեսնելու և կրթելու գերմանացու որդուն։ Մեղադրեալի պաշտպանը արտասանեց մի փայլուն ճառ, բացականչելով.—Աւելի լաւ է Ֆրանսիան կորչի, քան թէ ապրի գերմանական արեան հոսանքով։

Որդեսպանին երդուեալ դատաւորները տուին արդարացման դատավճիռ, որ և ընդունուեց միահաղոյն ծափահարութեամբ դատարանի սրահում ներկայ եղողների։

Ֆրանսացի երդուեալներն առհասարակ բացառիկ և հազուագիւտ դէպքերում են արդարացման դատավճիռ հանում սպանութեան համար, և ներկայ գործը չէր կարող արձագանգ չգտնել մամուլի սիւնակներում։

Եւ ահա թէ ինչ են ասում. «Մանուկը չէր լինի գերմանացի, եթէ այդ չկամենար նորա մայրը»։ «Մայրը կարող էր նորան յանձնել հասարակական խնամատարութեան»։ «Նա պարտական էր այդ մանուկը ֆրանսացի դարձնել»։ «Ամեն մի կենդանի արարած, ինչ ողորմելի պայմաններում էլ որ լոյս աշխարհ գայ, գոյութեան իրաւունք ունի, և բարբարոս է այն մարդը, որ նորան զրկում է կեանքից»...

Չի կարելի չհամաձայնել ֆրանսացի մտաւորականների ասածներին։

Կայ

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Իմ ստորագրութեամբ «Համբաւաբեր» № 7 թերթում տպուած բանաստեղծութիւնը՝ վերնագրով «Գ..ին» և ստորագրութեամբ «Ովսաննիկ»՝ յայտնում եմ յարգելի ընթերցողներին, որ դա միանգամայն կեղծ և թշնամաբար ուղարկուած ոտանաւոր է։

Ովսաննիկ

Խմբագրութիւնս ցաւ է յայտնում յարգելի «Ովսաննիկին» և զայրոյթը անծանօթ զեղծարարին որ գրականութիւնը դարձել է իւր անպատկառ չարամտութեան ասպարէզ։

## ՎՐԻՊԱԿ

«Համբաւաբերի» № 8-ում Մատենախօսութեան բաժնում տպուած Գիսակի յօդուածի մէջ սպրդել են հետևեալ վրիպակները՝ 1) 21-րդ տող տպուած է «յարադրութիւններ», պէտք է լինի «շարադրութիւններ». 27-րդ տող «հարաբերութիւններ» պէտք է լինի «շարադրութիւններ»։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ



Տպարան Ն. Աղանեանի Тип. Н. Аганьянца, Полицейская 7. Дозв. военной цензурой

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

№ 5

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Անուանացուցակ Հ. Կ. Կոմիտէի Դիլիջանի XII-րդ որբանոցի որբերի*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Տարիքը | Գրագէ՞տ է | Ծննդա-վայրը | ԾՆՈՂՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|
| 56 | Սողոյեան Ազատ | 5 | ոչ | | |
| 57 | Աճէմեան Սուրէն | 10 | այո | Վան-Այգեստան | |
| 58 | Եաւրումեան Հմայեակ | 12 | » | Մուշ-Ցրոն | |
| 59 | Սիմոնեան Մխիթար | 9 | ոչ | Մուշ-Ցրոն | |
| 60 | Մկրտչեան Շուշանիկ | 5 | » | ? | |
| 61 | Աբէթեան Երուանդ | 6 | » | Խնուս | |
| 62 | Սեդրաքեան Արմենակ | 7 | » | Խնուս-Դահրմա | |
| 63 | Յակոբեան Գասպար | 5 | » | Մուշ-Ալզլպնա | |
| 64 | Մկրոյեան Աբէթ | 7 | » | Արտոս | |
| 65 | Խօրենեան Մարգար | 7 | » | Գաւաշ-Խարակոն | |
| 66 | Եղոյեան Հայկ | 6 | » | Բիթլիս | |
| 67 | Գէորգեան Սուրէն | 7 | » | Վան-Աւանց | |

*Անուանացուցակ Դիլիջանի Հ. Կ. Կոմիտէի XIII-րդ և XIV-րդ որբանոցի որբերի*

1 Նոյեմբերի 1916 Թ.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | Մեղրուրեան Եղիշէ | Վան — | այո | 12 | ոչ |
| 2 | » Յաբէթ | » — | » | 10 | հայր |
| 3 | Միքայէլեան Գառնիկ | » Ծակ-Ծակ | » | 11 | մայր |
| 4 | Աւետիսեան Համբարձում | Մուշ-Խաստոց | ոչ | 14 | » |
| 5 | Սէթոյեան Գասպար | » » | » | 11 | » |
| 6 | Խաչատրեան Գէորգ | Էրզրում | այո | 9 | » |
| 7 | Մկրտչեան Կարապետ | Վան-Ճանիկ | » | 11 | ունի |
| 8 | Յովհաննիսեան Աւետիս | „ Խօշապ | » | 12 | » |
| 9 | Մկրտչեան Փանոս | Թիմար-Ալիւր | » | 11 | ոչ |
| 10 | Գրիգորեան Նազար | Բաղէշ-Ծապուռ | ոչ | 10 | » |
| 11 | Ղուկասեան Ումրիկ | » Կէօզալդէրէ | » | 10 | » |
| 12 | Աւետիսեան Ռուբէն | Մուշ-Աշատէն | » | 14 | » |
| 13 | Կարապետեան Արտաւազդ | Մուշ-Էրիշտէր | » | 5 | հայր |
| 14 | Մարտիրոսեան Յովհաննէս | Վան | » | 9 | մայր |
| 15 | Սարգսեան Ազատ | » | » | 6 | ոչ |
| 16 | Գէորգեան Կարապետ | Արճէշ-Բանան | » | 9 | » |
| 17 | Յակոբեան Ումրիկ | Խիզան-Խարիթ | » | 10 | » |
| 18 | Ղազարեան Խաչատուր | Արճակ-Սեան | » | 11 | » |
| 19 | Սեդրաքեան Գուրգէն | Վան-Դարմանց | » | 11 | հայր |
| 20 | Սերոբեան Յովհաննէս | Դատուան-Շահ | » | 12 | ոչ |
| 21 | Ղուկասեան Դաւիթ | Խնուս-Արօս | » | 7 | մայր |
| 22 | Ղազարեան Աւետիս | Մուշ-Արտեբի | » | 6 | ոչ |
| 23 | Սարգսեան Միհրան | Վան-Աթանանց | » | 9 | » |
| 24 | Յովհաննիսեան Սերոբ | » Շահգէլդի | այո | 10 | » |
| 25 | Կարապետեան Սարգիս | Մուշ-Բուլանըխ | ոչ | 10 | մայր |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 26 | Զառոյեան Գրիգոր | Վան-Խարականց | այո | 8 | մայր |
| 27 | Երանոսեան Ասանէթ | Խնուս | ոչ | 12 | » |
| 28 | Գէորգեան Մարիամ | Վան-Հիրիճ | » | 14 | ոչ |
| 29 | Գէորգեան Արմենուհի | » Աւանց | այո | 11 | այո |
| 30 | Յարութիւնեան Փարիզան | Մուշ-Գուլանըք | ոչ | 11 | մայր |
| 31 | Գալստանեան Թագուհի | Վան-Խարականց | ոչ | 14 | ոչ |
| 32 | Գալուստեան Լուսիկ | Խնուս-Հարամին | » | 10 | » |
| 33 | Ղուկասեան Նուարդ | » Կոպաշ | » | 10 | մայր |
| 34 | Յարութիւնեան Զմրուխտ | Մուշ-Զունք | » | 9 | » |
| 35 | Մուշեղեան Խանօ | » Մանիկ | » | 7 | այո |
| 36 | Սահակեան Գրիգոր | Կարճկան | » | 13 | ոչ |
| 37 | Ալանեան Յովհաննէս | Ալպաղի | » | 12 | » |
| 38 | Ղազարեան Խաչատուր | Բաղէշ-Խարիթ | » | 13 | » |
| 39 | Գրիգորեան Ռուբէն | Մուշ-Խոշկելդի | » | 10 | » |
| 40 | Խաչատուրեան Սահակ | Վան-Շատուան | » | 12 | » |
| 41 | Կարապետեան Պօղոս | Արճէշ | » | 9 | » |
| 42 | Յարութիւնեան Գարեգին | Վան-Հիրիճ | » | 9 | այո |
| 43 | Յակոբեան Մարգար | » Շատուան | » | 12 | ոչ |
| 44 | Յակոբեան Նշան | — — | » | 7 | » |
| 45 | Գասպարեան Արծրուն | Վան-Փայխնէր | » | 6 | » |
| 46 | Պետրոսեան Հայրիկ | — | » | 6 | » |
| 47 | Աւագեան Աստուածատուր | Մուշ-Խութ | » | 7 | " |
| 48 | Արշակեան Յարութիւն | Վան-Նորաւանց | » | 6 | " |
| 49 | Գրիգորեան Երուանդ | Բաղէշ-Կուլթիկ | » | 10 | » |
| 50 | Աբգարեան Համբարձում | Կարճկան | » | 12 | հայր |
| 51 | Գրիգորեան Մելքոն | Վան-Փայխներ | » | 12 | ոչ |
| 52 | Աւետիսեան Յովհաննէս | Մուշ-Լիզ | » | 12 | » |
| 53 | Յարութիւնեան Արմենակ | Ալճաւազ | » | 10 | » |
| 54 | Ղազարեան Նշան | Կարճկան | այո | 10 | » |
| 55 | Յակոբեան Հանրիկ | Բաղէշ | » | 8 | մայր |
| 56 | Ասլանեան Սիրուն | » Կինձ | » | 8 | » |
| 57 | Սեդրաքեան Ենիկ | Խնուս | » | 8 | » |
| 58 | Սափարեան Զարդար | Վան-Պաստականց | » | 7 | հայր |
| 59 | Մուրադեան Համբարձում | Բաղէշ-Խարիթ | » | 11 | ոչ |
| 60 | Վարդանեան Սարգիս | Մուշ-Ցրնա | » | 11 | » |
| 61 | Արշակեան Մովսէս | Խնուս-Բակառիճ | » | 10 | մայր |
| 62 | Գարեգինեան Արամ | Վան-Բերթակ | » | 9 | հայր |
| 63 | Աւետիսեան Սաթենիկ | Մուշ | » | 5 | ոչ |
| 64 | Աւետիսեան Մարօ | Բաղէշ-Մոճկան | » | 7 | հայր |
| 65 | Խլոյեան Շուշանիկ | Ալպաղի | » | 11 | մայր |
| 66 | Սահակեան Մաքրուհի | Ալճաւազ | " | 12 | ոչ |
| 67 | Ղուկասեան Մրջան | Կարճկան | այո | 12 | » |
| 68 | Նշանեան Հրանուշ | Վան | » | 13 | հայր |
| 69 | Ղազարեան Նանիկ | » Սեւան | » | 12 | ոչ |
| 70 | Մանուկեան Շուշանիկ | » — | » | 13 | » |
| 71 | Թորոսեան Զաւարթ | Գաւաշ | » | 12 | մայր |
| 72 | Սարգսեան Սրբուհի | Ալճաւազ | ոչ | 11 | ոչ |
| 73 | Աբգարեան Վարդուհի | Գեւաւառ | այո | 12 | մայր |
| 74 | Գրիգորեան Բարսեղ | Բաղէշ-Կինձ | ոչ | 8 | ոչ |
| 75 | Յարութիւնեան Զլֆօ | Կառկառ-Սպարկ. | այո | 13 | » |
| 76 | Անդրէասեան Վարդանուշ | Վան-Ածաշէն | ոչ | 9 | » |
| 77 | Կարապետեան Հայկանուշ | Բաղէշ-Տատիկ | » | 8 | » |
| 78 | Աւետիսեան Գարմիլէ | Շատախ | այո | 8 | » |
| 79 | Գարեգինեան Հոփսիմէ | Վան | ոչ | 8 | » |
| 80 | Յովհաննիսեան Սիսէ | Մուշ-Խոշկելդի | » | 11 | » |
| 81 | Աբրահամեան Սալվիկ | » Վարդէս | » | 16 | » |
| 82 | Աւետիսեան Միսակ | » Տատիկ | այո | 14 | » |
| 83 | Պօղոսեան Ալէքսան | » » | ոչ | 13 | » |
| 84 | Մարգարեան Մովսէս | " Մոճկան | » | 12 | » |
| 85 | Խօսրովեան Մովսէս | Կարճկան | այո | 13 | այո |
| 86 | Բաղդասարեան Մուշեղ | » Բոնաշէն | ոչ | 12 | ոչ |

### Անուանացուցակ Հ. Կ. Կոմիտէի Դիլիջանի XV-րդ որբանոցի որբերի

1 Նոյեմբերի 1916 թ.

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Յովսէփեան Գրիգոր | Բաղէշ-Սասիկ | ոչ | 13 | ոչ | |
| 2 | Կարապետեան Համբարձում | » Ծղկեամ | » | 13 | " | |
| 3 | Տէրմէրգեան Աւանդ | « — | » | 11 | » | |
| 4 | Արամեան Վահան | » — | » | 11 | » | |
| 5 | Գրիգորեան Գալուստ | » Վանիկ | » | 11 | » | |
| 6 | Թովմասեան Սեդրաք | » Մղեր | » | 12 | մայր | Ալէքս-պոլ |
| 7 | Վարդանեան Անդրանիկ | » — | » | 7 | " | Երևան |
| 8 | Վարդանեան Գեղամ | » — | » | 7 | ոչ | — |
| 9 | Մարտիրոսեան Խաչատուր | Վան-Փրխուս | » | 12 | մայր | Երևան |
| 10 | Սեդրաքեան Աղավարդ | » Սզգա | " | 11 | » | » |
| 11 | Սեդրաքեան Ոսկան | » » | » | 8 | ոչ | |
| 12 | Աբրահամեան Արսէն | » Եկմալ | » | 11 | » | |
| 13 | Պատուրեան Մանուկ | » Ամենաշատ | » | 10 | » | |
| 14 | Մկրտչեան Գեղամ | Ալճաւազ-Խնուս | » | 9 | մայր | |
| 15 | Մրշատեան Մուշեղ | Մուշ-Խարոս | » | 8 | » | |
| 16 | Մանուկեան Զաքար | Ալաշկերտ-Պատ. | » | 9 | » | |
| 17 | Մանուկեան Նիկոլ | » » | » | 8 | » | |
| 18 | Յակոբեան Միսաք | Բաղէշ | » | 10 | " | |
| 19 | Յակոբեան Երուանդ | " | » | 11 | » | |
| 20 | Սեդրաքեան Հայկազ | Խնուս | » | 10 | " | |
| 21 | Ազոյեան Եփրեմ | Խիզան | » | 10 | ունի | |
| 22 | Պետրոսեան Յովհաննէս | Մոկս | » | 8 | մայր | |
| 23 | Շահինեան Նահապետ | » | » | 9 | ոչ | |
| 24 | Յարութիւնեան Հմայեակ | Վան-Գողանց | » | 10 | » | |
| 25 | Սարգսեան Պօղոս | Բաղէշ-Մարկերք | » | 12 | մայր | |
| 26 | Յակոբեան Բագրատ | Վան-Օրորան | » | 9 | ոչ | |
| 27 | Գրիգորեան Սանասր | Բաղէշ-Կոթալու | » | 9 | » | |
| 28 | Մուրադեան Մանուկ | Վան-Կրաքոմ | » | 7 | մայր | Դիլիջան |
| 29 | Մարգարեան ? | » Հաղոտ | » | 8 | ոչ | |
| 30 | Տիգրանեան Արտաշէս | Մուշ-Տերկեր | » | 10 | " | |
| 31 | Յակոբեան Ֆատուխ | Բաղէշ | » | 10 | ոչ | |
| 32 | Կարապետեան Եւգինէ | Վան-Մարկս | » | 10 | հայր | |
| 33 | Խորենեան Համազասպ | » Խարսկանց | » | 8 | մայր | |
| 34 | Խորենեան Նուարդ | » » | » | 13 | » | |
| 35 | Պետրոսեան Սիրանուշ | Մոկս-Տիաշտ | » | 10 | ունի | |
| 36 | Պետրոսեան Թագուհի | » » | » | 11 | » | |
| 37 | Շահինեան Մարիամ | Բաղէշ-Կանկառ | » | 11 | ոչ | |
| 38 | Մարտիրոսեան Յասմիկ | Վան | » | 9 | » | |
| 39 | Գրիգորեան Յասմիկ | » Խումար | » | 13 | » | |
| 40 | Պետրոսեան Ռոզա | Արճէշ | » | 13 | » | |
| 41 | Մինասեան Ծովինար | Վան-Հախորի | » | 14 | » | |
| 42 | Յարութիւնեան Ալմաստ | » Կիւրծոթ | » | 13 | " | |
| 43 | Յարութիւնեան Սաթենիկ | Մոկս-Բարվար | » | 13 | հայր | |
| 44 | Սեդրաքեան Խազալ | Մուշ-Խաչկելդի | » | 15 | — | |
| 45 | Ազիզեան Շուշանիկ | Վան-Շատուան | » | 15 | — | |
| 46 | Սահակեան Լուսիկ | » Խորգոմ | » | 12 | — | |

### Անուանացուցակ Հ. Կ. Կոմիտէի Դիլիջանի XVI-րդ որբանոցի որբերի

1 Նոյեմբերի 1916 թ.

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1 | Գափլանեան Մկրտիչ | 12 | Վան | այո |
| 2 | Յովհաննիսեան Մնացական | 14 | " | » |
| 3 | Գէորգեան Մուշեղ | 13 | Բիթլիս | » |
| 4 | Գիւլանեան Ղազար | 13 | Վան | » |
| 5 | Սիմէօնեան Տիգրան | 12 | Բիթլիս | » |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 6 | Բարսեղեան Ենովք | 13 | Վան | այո |
| 7 | Ներսիսեան Մուրադ | 14 | » | » |
| 8 | Սեդրաքեան Յարութիւն | 12 | » | » |
| 9 | Մարգարեան Միսաք | 13 | » | » |
| 10 | Մովսէսեան Մելքիսեթ | 13 | » | » |
| 11 | Գրիգորեան Գեղամ | 14 | " | » |
| 12 | Յարութիւնեան Մելքոն | 13 | Բիթլիս | » |
| 13 | Նահապետեան Աւետիս | 13 | Վան | » |
| 14 | Համբարձումեան Վահան | 12 | » | « |
| 15 | Իգիթեան Մխիթար | 12 | Բիթլիս | » |
| 16 | Խաչատուրեան Յակոբ | 11 | Վան | » |
| 17 | Վարդանեան Յարութիւն | 12 | » | » |
| 18 | Մանուկեան Մովսէս | 12 | » | » |
| 19 | Մանուկեան Մանուկ | 13 | » | » |
| 20 | Վարդանեան Պետրոս | 12 | » | » |
| 21 | Գաբրիէլեան Վարդան | 12 | » | » |
| 22 | Մանուկեան Սահակ | 14 | » | " |
| 23 | Նշանեան Վարդան | 12 | › | " |
| 24 | Թովմասեան Աբրահամ | 10 | » | » |
| 25 | Յակոբեան Տիրան | 12 | » | › |
| 26 | Մանուկեան Մովսէս | 12 | Բիթլիս | » |
| 27 | Սեդրաքեան Մալխաս | 12 | Վան | » |
| 28 | Սարգիսեան Գարեգին | 12 | " | › |
| 29 | Միհրանեան Գասպար | 10 | » | » |
| 30 | Աւետիսեան Սամուէլ | 12 | » | » |
| 31 | Աւետիսեան Վահան | 13 | " | » |
| 32 | Յովհաննիսեան Աղասի | 11 | Բիթլիս | " |
| 33 | Յակոբեան Պետրոս | 14 | Վան | " |
| 34 | » Հմայեակ | 11 | " | » |
| 35 | Գրիգորեան Համազասպ | 12 | » | » |
| 36 | Յովհաննիսեան Կարապետ | 12 | » | » |
| 37 | Բարսեղեան Գրիգոր | 13 | » | » |
| 38 | Թադէոսեան Ասատուր | 13 | » | " |
| 39 | Յովհաննիսեան Սարգիս | 12 | Բաղէշ | » |
| 40 | Սեդրաքեան Վահան | 13 | Վան | » |
| 41 | Յակոբեան Անուշաւան | 13 | Բիթլիս | " |
| 42 | Լեոնեան Խոսրով | 9 | Վան | » |
| 43 | Գրիգորեան Արսէն | 9 | » | » |
| 44 | Աւետիսեան Սիմոն | 12 | » | " |
| 45 | Յակոբեան Նշան | 13 | » | » |
| 46 | Յովհաննիսեան Յակոբ | 11 | » | » |
| 47 | Մովսիսեան Յովհաննէս | 13 | » | » |
| 48 | Սեդրաքեան Յարութիւն | 12 | Բիթլիս | » |
| 49 | Գալստեան Բաջբերունի | 9 | Կարին | " |
| 50 | Մեսրոպեան Վազգէն | 10 | Բիթլիս | » |
| 51 | Տիգրանեան Սահակ | 10 | Վան-Կուշ | ոչ |
| 52 | Շահինեան Նազարէթ | 14 | Վան | այո |